1916 № 4.—Յունուարի 17

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ., Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ գիւղացիների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր. կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արամեանցեան հրապար. № 7.
**Հեռախօս № 29.**

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.
Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։
Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։
Տպագրութեան համար անյարմար համարուած մեծ յօդուածները պահւում են մէկ ամիս խմբագրատանը, իսկ փոքրերը անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1916 Թ.*

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ.* 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն. 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ։ 5. Փոստարկղ և յայտարարութիւն։

*Թերթը բաղկացած է 16 մեծադիր երեսներից և լոյս կտեսնէ կիրակի օրերը։*

*ՄԻՆՉԵՒ ԱՅԺՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ ԱՇԽԱՏԱԿՑԵԼՈՒ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ԻՆ*

*Աբեղեան Մանուկ, Ալթունեան Գէորգ, Աղատրեան Բոգդան (բժշկապետ), Այվազեան Բագրատ, Բաշինջաղեան Գէորգ (նկարիչ), Բերբերեան Մինաս, Դեմիրճեան Դերենիկ, Եսայեան տիկ. Զապէլ, Դումեան Յով., Էգլեան Գուրգէն, իշխ. Թումանեան Գէորգ, իշխն. Թումանեան Մարիամ, իշխ. Թումանեան Միքայէլ, Թումանեան Յովհաննէս, Լէօ, Խանզադեան Յոլակ, Հանայեանց Սա., Կարապ (Թաշճեան Կ.), Կոստանեան Յովհաննէս, Ծուղուրեան Յարութիւն քահանայ, Մալխասեան Ստեփան, Մանուէլեան Միքայէլ, Մաղէնճեան Մամբրէ, Մելեան Մեսրոպ քահ., Մուսայէլեան Հ., Յովհաննիսեան Միքայէլ, Յարութիւնեան Իսահակ, Յովհաննիսեան Հայկ, Յովհաննիսեան Տիգրան Նար-Դոս, Նաւասարդեան Բագրատ (բժշկապետ), Շարաֆեան Ալեքսանդր, Շիրվանզադէ, Զալխուշեան Գր., Պետրոսեան Յարութիւն. Ջամալեան Արշակ, Սպենդիարեան Յովհաննէս, Տէր-Դանիէլեան Դաւիթ. Տէր-Գէորգեան Վահան, Տէր-Միրաքեան Յովհաննէս, Փիրալեան Յարութիւն, Փիրումեան Տիգրան, Քամալեան Սարգիս, Օլթեցեան Արամ։*

Խմբագիր՝ Ս. Յարութիւնեանց

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն

Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհուրդը և Հայկական Կենտրոնական Կոմիտէն յայտնում են, յունվարի 17-ին կիրակի Վանքի Մայր եկեղեցում ս. պատարագից յետոյ, կը կատարուի հոգեհանգիստ գաղթականների համար գործող բծաւոր տիֆից վախճանուած Բաբկէն վարդապետի և իր [illegible] Մաթէոս Բաղդասարեանի յիշատակին։

**„Համբաւաբեր“-ը № 5-ից սկսեալ կուղարկուի միմիայն բաժանորդներին:**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԼՔՈՒԱԾ ՉԵՆՔ

Չէզոք պետութիւնները փորձեր արին թշուառ Թիւրքահայերի կեանքը փրկել, դիմումներ անելով օսմանեան խելագար կառավարութեան և չափաւորութեան ու օրինաւորութեան յորդորներ կարդալով: Բայց այս յորդորները, ասում են, միայն գրգռում էին Պարիզում դաստիարակուած երիտասարդ Թիւրքերին: Սրանք պահանջում էին չը խանգարել իրանց, իրանց իրաւունքն էին համարում վայելել գազանութիւնների ամենածայրայեղ քաղցրութիւնը, այն, որ խնայուած է եղել այն իսկ չերքեզներին ու լէնկթեմուրներին: Եւ բողոքներն ու խորհուրդները մնացին անլսելի: Բեռլինի խրախոյսները այնպիսի չափերի հասցրին հայութեան կործանումը, որ մենք մի պահ կարծեցինք թէ փրկութիւն այլ ևս չէ մնացել մեզ համար, թէ իրաւունքը տրուած է միայն գազանութեան և մարդկայնութիւնը վերանում է աշխարհից...

Մենակ էինք մեր անօրինակ սոսկումների մէջ: Եւ կարծեցինք մի պահ թէ այդ մենակութիւնն էլ կը գայ մեզ վերջնականապէս անհետացնելու բոլոր աշխարհի սառն անտարբերութեան մէջ...

Բայց, բարեբախտաբար, սխալուած էինք մենք, բարեբախտաբար չարաչար կերպով: Եւ այսօր արդէն շատ միջոցներ ունենք համոզուելու, որ մարդկայնութիւնը կայ երկրագնդի վրայ և մենք միայն զարհուրելի կերպով հարուածուած ենք, բայց լքուած չենք:

Մարդկայնութիւն... Փա՜ռք նրան, տիեզերական ստեղծագործող մի ոյժ է նա, որ իր նուիրական դէմքն է բարձրացնում ազգերի և երկիրների կործանման և դժբախտութեան այս դժնդակ օրերին: Իր մխիթարանքն է նա ուղարկում հայերին գեղեցիկ հեռուներից: Հայասիրական կազմակերպութիւններ են հիմնուել և հիմնւում են Հիւսիսային Ամերիկայում, Շուէյցարիայում, Անգլիայում, մեծամեծ գումարներ են հաւաքւում գերման-թաթարական գազանութիւններից ազատուած հայերին պահպանելու և պատսպարելու համար: Յուզիչ են այդ հայասէր հիմնարկութիւնների գործունէութեան մանրամասնութիւնները: Տեսնում ենք գրքերի, կարօղութեան տէր, հասարակական և մտաւոր աշխարհի մէջ հռչակ վայելող անձանց, որոնք եռանդով և անձնուրացութեամբ աշխատում են արեւելքում երկաթի գայլերից յօշոտուող մի փոքրիկ ժողովրդի համար: Յիշեցնելու կարիք չըկայ թէ որքան խոշոր է և Ռուսաստանի մատակարարած օգնութիւնը:

Համակուենք, ուրեմն, ամենքս, մեծ թէ փոքր, այն ճշմարտութեամբ որ մենք այլ ևս լքուած չենք, որ մարդկայնական զգացմունքը աշխարհի բոլոր կողմերում մեզ հետ է, մեր բարեկամն ու պաշտպանն է, ձեռք է մեկնում մեզ, եղբայրական ձեռք: Այս գիտակցութիւնը մեզ հզօր չափերով հաւատ կը ներշնչէ, աւելի ջղուտ կը դարձնէ մեր ինքնագործունէութեան թափը:

Միջոցների պակասութիւնը չէ, որ այսուհետև պիտի հալածէ մեր թշուառ ու զրկուած եղբայրներին նրանց դաժան պանդխտութեան մէջ: Մենք միայն աշխատել իմանանք, մենք ստեղծագործութիւնների շարունակութիւն ցոյց տանք, մնացածը կը լինի: Հայասէր կազմակերպութիւնները կանչում են մեզ հեռուից. — Ասացէք, ինչ է հարկաւոր, և մենք կը տանք ձեզ:

Աշխարհի երեսին հեշտը եղել է միշտ քանդումը, աւերումը: Գերման-թաթար եղբայրութեան համար դժուար չէ եղել մի օրում, երկու օրում տասնեակ հազարներով կանայք ու երեխաներ կոտորելը: Այս հեշտութիւնը, այս արիւնոտ խնջոյքները միշտ անիծուած են եղել և կը մնան մարդկութեան պատմութեան մէջ: Դժուարը, դժնդակը վերաշինութեան, վերակենդանացման գործն է որի վրայ աշխատել պէտք է ամբողջ սերունդներով...

Այդ գործն է մեր առջև: Մեր առջև ողորմելի փշրանքներ են մնացել, մեծ կործանումը միայն մի քանի բեկորներ է թողել: Բայց մարդկութեան ամենավեհ տեսարանը հէնց այն է, երբ այսպիսի փշրանքներից ու փլատակներից նորից մի ապրող, զգացող ու հաւատացող ժողովրդի շէնքն է կառուցւում:

Համիդները, Թալաաթները, Էնվէրները, նոյն իսկ Վիլհելմները — հաւատա՜նք — աւելի շատ պատիւ չը պիտի ունենան պատմութեան մէջ քան Չարմազանները, Լանկթեմուրները, Ատիլաները: Մարդկութեան պաշտամունքը դարձեալ շինարարութիւնը, մոխրից յարութիւն առ-

*նելը, ահերակի վրայ յաղթականօրէն ու վստահօրէն ապրելը պիտի մնայ։*

*Գնանք այս պաշտամունքի ճանապարհով... Մենք լքուած չենք...*

---

## ՆՈՒԷՐՆԵՐ
### «Համբաւաբեր»-ի տարածման համար

*Նորից ստացուեցին նուէրներ.— Գասպար Տէր-Մարգարեանից մի օրինակ Շիրուանեանց գիւղի իր հիմնած դպրոցին։ Ինժեներ Գ. Ջ. Եարալեանից 3 օրինակ ուղարկելու ըստ բարեհայեցողութեան խմբագրութեան։*

---

# Ներքին տեսութիւն

## ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԾԱԳՄԱՆ, ԱՐԴԻ ԿԱՑՈՒԹԵԱՆ Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԵՒ ՆՐԱՆ ԿԻՑ ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ*)

III.

*Երբ յայտարարւում է համերոպական պատերազմը և բազմաթիւ ընտանիքներ զօրաժողովի պատճառով զրկւելով աշխատաւոր ձեռքերից, ընկնում են նիւթական նեղ կացութեան մէջ, Կ. Հ. Բ. Ընկ-թիւնը իբրև հասարակական հիմնարկութիւն, իր բարոյական պարտքն է համարում ըստ իր կարողութեան օգնութեան հասնել նոցա։*

*Ընկերութեան խորհուրդը 1914 թ. Օգոստոսի 8-ին դիմում է Կով. փոխարքային և թոյլտւութիւն խնդրում, հաւաքել կամաւոր նուէրներ յօգուտ պահեստի զինուորների ընտանիքների և վիրաւորների։ Օգոստոսի 11-ին ստացւում է թոյլտւութիւնը, և խորհուրդը շրջաբերականով դիմում է իր ճիւղերին գործելու նոյն ուղղութեամբ։ Ը-թիւնը Թիֆլիսում իր շինութեան մէջ, բացում է վիրաւոր զինուորների համար մի հիւանդանոց 100 մահճակալով։ Որպէսզի պատերազմից վնասուածների օգնութեան գործը դրուի աւելի լայն հիմքերի վերայ և հայ ժողովուրդ հանդէս գայ ազգովին, Կ. Հ. Բ. Ընկ. նախաձեռնութեամբ 1914 թ. Սեպտեմբերի 14-ին ընկերութեան դահլիճում կայանում է համագումար, ընկ. ճիւղերի և հայ կրթական-կուլտուրական հիմնարկութիւնների ներկայացուցիչների մասնակցութեամբ։ Այս համագումարը ընտրում է Հայկական Կենտրոնական Կոմիտէ 24 անդամից, 12-ը ընտրւում են Թիֆլիսում, 12-ը Բաքւում.*

*Հայ. Կենտր. Կոմիտէն Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսը առած է իր հովանաւորութեան ներքոյ, հետևեալ հեռագրով.*

*«Միանգամայն մխիթարական է, որ հայ կուլտուրական-բարեգործական ընկերութիւնների ներկայացուցիչների համագումարը որոշում է կայացրել միացնել հայ ժողովրդի գործունէութիւնը վիրաւոր և պահեստի զինուորների ընտանիքներին եղբայրական օգնութիւն մատակարարելու գործում։ Այդ մարդասիրական գործը ընդունելով իմ հովանու ներքոյ, օրհնում եմ համագումարի բոլոր անդամներին։ Այդ առթիւ կուղարկուի շրջաբերական-կոնդակ թեմական առաջնորդներին և հայ Աստուածայաճոյ հաստատութիւններին։*

*Գէորգ Ե. կաթողիկոս Ամենայն Հայոց*

*Կոմիտէի անդամներ ընտրւում են՝*

*1. Մեսրոպ Եպիսկոպոս պատուաւոր նախագահ, 2. Սամսոն Յարութիւնեանց նախագահ, 3. Պ. Կ. Ալիխանեան (իրաւաբ. նախ. կառ. առև. բանկ.), 4. Պ. Ա. Մէլիք-Ազարեանց (գործարանատէր), 5. Պ. Ա. Խատիսեան (քաղաքագլուխ), 6. Պ. Յ. Խունունց (տես. Ներս. դպրոցին), 7. Իշխանուհի Մ. Թումանեան, 8. Պ. Բ. Ազատեան (բժիշկ), 9. Տիկ. Ն. Գամբարեան, 10. Տիկ. Ս. Օգանիզեան, 11. Տիկ. Հ. Ռոստամեան, 12 Պ. Ա. Թամամշեան (կառ. առև. բանկ.), 13. Պ. Մ. Փալանթարեան (առևտրական), 14. Պ. Խ. Յարութիւնեան (ուսուցիչ), 15. Պ. Կ. Խալաթեանց (առևտրական), 16. Պ. Ս. Խարազեանց, 17. Պ. Մ. Օգանէզեան (լրագրող), 18. Պ. Ա. Պօղոսեան (առևտրական), 19. Պ. Մինասեան (բժիշկ), 20. Պ. Ս. Արովեան (տեսուչ Գայան. դպ.), 21. Տիկ. Դ. Թաղէոսեան, 22. պ. Մ. Անանեան, 23. Պ. Օ. Տէր-Միրաքեան (տես. Յակ. դպ.), 24. Պ. Յ. Շահնազարեան (հաշուապ.)։ Հ. Կենտր. Կոմիտէն ի թիւս միւս ազգութիւնների հասարակական հիմնարկութիւնների՝ ճանաչուած է 1915 թ. Օգոս. 30-ի օրէնքով և ունի ներկայացուցիչը ներքին գործերի նախարարութեան առանձին խորհրդակցութեան մէջ, յանձին Պետական Դումայի անդամ Պր. Աճէմեանի։*

*Թէպէտ Հ. Կենտ. կոմիտէն և Կ. Հ. Բ. Ը-թիւնը իրենց գործունէութեան առաջին շրջանում ծրագրում են կազմակերպել վիրաւոր և պահեստի զինուորների ընտանիքների օգնութեան գործը, բայց երբ սկսում է ռուս-տաճկական պատերազմը և առաջ է գալիս թշուառ գաղթականութիւնը, իրենց ամբողջ ոյժը նուիրում են փախստականների օգնութեան։ Հէնց փախստականների երևան գալու առաջին օրից, Բէօփրիւ-Բէօյի նահանջից յետոյ, Հ. Կ. Կոմիտէն և Կ. Հ. Բ. Ը.-նը առաջինն են լինում, որ դիմում են վերջինիս ճիւղերի աջակցութեանը, ուղարկում են լիազօրներ շրջելու փախստականների վայրերը օգնութիւն հասցնելու, բաւարարելու նրանց տնտեսական վիճակը և որոշելու կարիքի չափը։ Հ. Կ. Կոմիտէի և Կ. Հ. Բ. Ը.-թեան գործունէութիւնն իսկոյն երևում է համարեա բոլոր վայրերում, ուր առանձին են օգնութիւն հասցնում, գործը կազմակերպում, ստեղծելով մարմիններ։ Լիազօրներից պ.պ. Ս. Յարութիւնեանը, Զամոյեանը, Ագնաւուրեանը և Դեմիրչեանը ուղարկւում են Արդահանի, Արդանուշի և Օլթուայ շրջանները։ Տողերիս գրողը իբրև լիազօր ուղարկուել է՝ Ղարսի, Սարիղամիշի, Բասէնի, Զուլֆայի, Մակուայ, Մանազկերտի, Իգդիրի, Նոր-Բայազիտի և Նախիջևանի շրջանները։*

*Պ. Բէգզադեանը Ալաշկերտի շրջանը, պ. Մեբենաջեանը Իգդիրի, պ. Ս. Արամեանը—Վանի, պ. Խանոյեանը—Բարչալուի, Հ. Բ. Ընկ. ճիւղի նախագահ Մեսրոպ Ք. Մելեանը և պ. Ա. Վերմիշեանը Շաւշիթի և Արդուինի շրջանը, պ.պ. իրաւաբաններ Ա. Մամիկոնեան և Կարճիկեան—Արդուինի, Արդահանի շրջանը, ուսումնասիրելու տեղական ջարդերի ծագման հանգամանքները։*

*Կոմիտէի և Ը-թեան նախագահ պ. Ս. Յարութիւնեանը, թէ իբր անդամ լիազօր կով. գլխաւոր կոմիտէի և թէ քաղաքների միութեան, շրջել է՝ Ղարսի՝ Ալէքսանդրապոլի, Ախալքալաքի, Բաթումի և Ղազախի շրջանը։*

*Պատուաւոր նախագահ Մեսրոպ եպ.-ը գնացել է Բարչալուի գաւառը Կարսից փոխադրող փախստականների գործը կանոնաւորելու համար։*

*Ղարսի ճիւղի անդամ պ.պ. Զամբազեանը Լիպ. Ալլահվերդեանը և Գիւլնազարեանը ուղարկուել են Սարիղամիշի շրջանը պարզելու գաղթականութեան թիւը և կարիքը։*

*Եւ որովհետև գաղթականների փախուստը, սնունդի պակասութիւնը, բնակարանների անյարմարութիւնը, ցուրտը և այլն, պատճառ են դառնում համաճարակի և տարափոխիկ հիւանդութեանց, օրինակ՝ Ղարսի, Ալէքսանդրապոլի Նախիջևանի և այլ շրջաններում բծաւոր և աղիքի. տիֆը տանում էր գիւղերում օրական 3—5 զոհ, իսկ Էջմիածնի, Իգդիրի և Երևանի շրջաններում օրական 30—300, ուստի Կոմ. և Բ. Ը-ը մինչև բժշկա-սանիտ. գործը քաղաքների միութեան անցնելը (1915 թ. հունւ. ամիսը) ինքն է զբաղւում թէ այդ գործով և թէ պահում սննդատու կայարաններ։ Կոմիտէի նախաձեռնութեամբ բացուել են փախստականների համար հիւանդանոցներ Ալէքսանդրապոլում, Կարսում, Կաղզուա-*

*) Տես «Համբաւաբեր» № 2, 3,

գործ բացուեց մեր աչքի առջև։ Հայկական ժանեակը Եւրոպական շուկաներում յայտնի, dentelle armenienne—հռչակաւոր բանուածքը, լոյս աշխարհ եկաւ։ Իրենք, բանողները, մեզ հաղորդել էին, որ Վանում գերմանացիք մեծ քանակութեամբ պատրաստել էին տալիս, որոնց ամերիկացիք աւելի գին էին տալիս։ Մեր ցուցահանդէսի այն յաճախորդ տիկինները, որոնք Եւրոպայում տեսել էին այս բանուածքները, ասում էին, որ այնտեղ դրանք շատ թանկ են գնահատւում։ Ինչպէս երեւում է, այս էլ գերմանացիների շահագործութեան հարուստ աղբիւր էր եղել։ Մեր ցուցադրուած նիւթերը Թիֆլիսում հիացմունքի առարկայ դարձան և համարեա բոլորը ծախուած էին ցուցահանդէսից առաջ։

Ո՞վ է տեսել վանեցի ոսկերիչների ձեռակերտները, որոնք նուրբ ճաշակի, լուրջ աշխատանքի, գործը սիրող համբերատար գեղարուեստագէտի սքանչելի արդիւնքներ են։ Այս արհեստաւորները արծաթի վրայ այնպէս ազատ են շարժում իրենց փորագրութեան գրիչը, ինչպէս հմուտ նկարիչը՝ վրձինը։ Անհաւատալի նմանութեամբ փորագրում են պատկերներ։ Այդ վարպետներն այնպիսի նուրբ, մանուածապատ զարդարանքներ են պատրաստում, որ ամեն ցուցահանդէսում կարող են մրցակցութեան ներկայանալ։ Կովկասում ամենից շատ հռչակուած են Ախալցխայի ոսկերիչները, մօտ մի դար առաջ Կարնից գաղթածները։ Տրապիզոնում տեսել եմ կանանց և աշակերտուհիների մեքենայի արագութեամբ գուլպայ գործելը, գիւղացի այր մարդկանց գիւղից թել մանելով քաղաք գալը։ Պոլսի հայ ճարտարապետների արտադրութիւնները հռչակաւոր են։

Առեւտրի մէջ էլ Թիւրքիայի հայերը հրաշքներ են գործել։ Եգիպտոսում կազմակերպել են թուղթի և այլ բերքերի հսկայական գործեր, Պոլսում և Եգիպտոսում նաև յոյների նախանձն են գրգռել։ Ծովափնեայ բոլոր քաղաքներում մեծ առեւտրական տներ են հիմնել։ Երբ համիդեան սոսկալի տասնամեայ խառնութիւնների պատճառով հայոց առեւտրական յարաբերութիւնները մինչև անգամ երկրի ներսում ընդհատուեցին, կառավարութիւնը աշխատեց թրքական առեւտրին և արդիւնաբերութեանը զարկ տալ։ Այս ժողովուրդը այդպիսի նպաստաւոր հանգամանքներում որոշ գործունէութիւն ցոյց տուեց, բայց երբ սահմանադրութեան շնորհիւ հայերի ձեռքերն ազատուեցին, նրանք այնպիսի արագ ընթացքով վերականգնեցին իրենց կաշկանդուած, քայքայուած տնտեսութիւնը, որ ոչ միայն թուրքերի, այլ և գերմանացիների նախանձը շարժեցին։ Հիւսիսային հայերս վերջին դարի անհամեմատ աւելի նպաստաւոր հանգամանքներում նմանօրինակ յառաջադիմութիւն չենք ունեցել։ Ի՞նչ հսկայական թռիչք կունենար նրանց մշակոյթը, եթէ ազատ եղած լինէին։

Այս ամեն ուշագրաւ երեւոյթները բերում են մեզ այն եզրակացութեան, որ այս ժողովուրդն օժտուած է եւրոպացու խիստ ակնբաղձի մանուանց գեղարուեստական ձիրքերով։ Այդ ժողովրդի «եանկի»-ական անընկճելի տոկունութիւնն է եղել նրա գոյութեան պահպանման գլխաւոր հիմքը և միանգամայն նրա անբաղդութեան պատճառներից մէկը, դրացի ժողովուրդների նախանձը տնտեսական հողի վրայ շարժելով։

Հիւսիսային և հարաւային հայերի ժառանգական ձիրքերը համեմատելով, տեսնում ենք նման գծեր, սակայն այն, ինչ որ մեզանում թոյլիկ է, նրանց մէջ աւելի խորունկ է ու բեղմնաւոր։ Երեւում է, որ հնումը հիւսիսային հայերի մաքառումը, կովկասեան լեռնաբնակների, սախակ ցեղերի շրջանում, նրանց կուլտուրական ընթացքին աւելի խոչընդոտ է դարձել՝ քան հարաւային հայերի աւելի քաղաքակիրթ միջավայրը։

Յ. Տէր-Միրաքեան

---

# ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՇՈՒԷՅՑԱՐԻԱՅՈՒՄ

I

Մեր հասարակութեան մեծամասնութիւնը շատ սխալ գաղափար ունի բարեգործութեան մասին։

Ամենատարածուած կարծիք է, որ բարեգործը նա է, ով չքաւորին փող է տալիս։ Իսկ մի բժիշկ, որ ձրի բժշկում է այդպիսի հիւանդներին, մի փաստաբան, որ ձրի պաշտպանում է նրան. մի անհատ, որ գործ է ճարում և աշխատանքի ճանապարհ է ցոյց տալիս, միթէ դրանք էլ բարեգործներ չեն։

Շատերը իրանց դիմող չքաւորներին ուղարկելով Բարեգործական ընկերութիւնը նպաստելու, բայց գոհացում չստանալով այնտեղից, սկսում են յարձակուել ընկերութեան վրայ։

—Ի՞նչ է անում ձեր ընկերութիւնը, ասում են նրա, ինչի՞ համար է փողեր հաւաքում, որ մերժում է աղքատներին։ Որքան էլ աշխատում ես բացատրել, թէ ընկերութիւնը նախ հնարաւորութիւն չունի ամենքին օգնելու, իսկ փող բոլորովին չը պէտք է բաժանել, որովհետև այդ նպատակայարմար չէ և նոյն իսկ վնասակար. սակայն՝ քիչերն են համոզւում, շատերն էլ յայտնում են, որ իրենք փող են տալիս բարեգործականին, որպէս զի աղքատները իրենց դուռը չը ծեծեն և իրենց անհանգստութիւն չը պատճառեն։

Հէնց այս է մեր դժբախտութիւնը, որ կարծես թէ միայն որոշ մարդիկ պէտք է զբաղուեն բարեգործութեամբ, իսկ միւսները կարող են ազատ, անհոգ ապրել իրենց համար։ Ո՛չ, բարեգործութիւնը պէտք է լինի ոչ թէ կամաւոր, կամ մի ժամանց որոշ մարդկանց համար, այլ պարտադիր ամենքի համար։ Եւ մենք պէտք է ձգտենք զարթեցնել մեր հասարակութեան բոլոր խաւերի մէջ այդ գիտակցութիւնը։

Եթէ իւրաքանչիւր հայ մի քիչ մտածի իր ազգի ցաւերի մասին, մի փոքր էլ, շատ փոքր զոհաբերութիւն անի, մեր ազգային բոլոր հիմնարկութիւնները կը ծաղկեն, և մեր ժողովուրդը կը բարգաւաճի։

Ես անց եմ կացրել Շուէյցարիայում 3 տարի, ապրել եմ նրա գլխաւոր քաղաքներում և ամենախուլ գիւղերում, բայց ոչ մի տեղ և երբէք ես չեմ տեսել որևէ մէկին ցնցոտիներով և կամ ձեռք կարկառելիս մուրալու համար։

Ցիւրիխ քաղաքի փողոցներից մէկում մի օր տեսայ փոքրիկ ձեռնակառքի մէջ նստած մի ոտից անդամալոյծ մարդ, որը լրագիր էր կարդում։ Երբ ես անցայ նրա մօտով ըստ մեր սովորութեան ուղեցի ողորմութիւն տալ և ձեռքս տարայ գրպանս։

Մարդը նկատելով այդ շարժումը, իսկոյն դցեց լրագիրը և քաղաքավարութեամբ հարցրեց. «Ի՞նչ էք ուզում, տիկին»։ Այդ վայրկեանին միայն ես նկատեցի, որ նրա ծնկներին ամրացրած էր փոքր տախտակ, որի վրայ դարսուած էին տուփերով լուցկիներ ու ծխախոտ՝ ծախելու համար։ Ես շփոթուեցի, բայց հասկանալով, որ մեծ վիրաւորանք կը հասցնեմ նրա արժանապատուութեանը, եթէ ողորմութիւն առաջարկեմ նրան, շտապով առայ նրանից մի տուփ լուցկի և հեռացայ խորապէս ազդուած։

Իրաւ, շատ արտասովոր բան էր այդ ինձ համար։ Մի անդամալոյծ, որը մեզանում անպայման բեռ կը դառնայ իր ընտանիքի համար, այնտեղ իր ձեռքի աշխատանքովն էր ապրում։

Այդ դէպքը դրդեց ինձ հետաքրքրուել իմանալու՝ արդեօք Շուէյցարիայում չկա՞ն աղքատներ, և ինչպէս են նրանք ապրում։

Շնորհիւ մի քանի ծանօթների, ես շուտ իմացայ, որ թէև Շուէյցարիայում շատ խեղճեր կան, բայց ժողովուրդ ունի այնքան շատ և բազմատեսակ բարեգործական հիմնարկութիւններ, որ նրանց չքաւորների բոլոր կարիքները հոգացւում են և անկարելի բան է, որ այդ երկրում մէկը քաղցից մեռնի և կամ հիւանդութեան ժամանակ առանց բժշկութեան մնայ և կամ նոյն իսկ կիսամերկ պտտի փողոցներում։ Իսկ երբ շուէյցարիացիք էին ինձ հարցուփորձ անում մեր մասին, ես ամաչում էի պատմել, որ

մեզանում շատ խեղճեր կան, որոնք շաբաթներով տաք կերակուրի երես չեն տեսնում, շատերը մերկութիւնից չեն կարողանում փողոց դուրս գալ, իսկ բժշկութեան արժանանում են շատ քչերը։

Որպէսզի մի կերպ արդարացնէի մեզ, ես ասում էի, որ մեծ գումարներ է հարկաւոր բոլորին օգնութեան հասնելու, իսկ մենք զուրկ ենք այդքան միջոցներից։

«Ի՞նչ միջոցներ են հարկաւոր, առարկում էին նրանք, ամեն մի բարեգործական հիմնարկութիւն ինքը իրան կը պահէ, հարկաւոր են միայն բարի ցանկութիւն, մանաւանդ գիտակցութիւն և պարտաճանաչութիւն։

Ապա տեսէք մեր հիմնարկութիւնները։ Միթէ Կովկասը աւելի աղքատ է, քան մեր Շուէյցարիան, որ չի կարողանում պահել իր ժողովուրդին»։

Եւ ես գնացի, տեսայ և հիացայ, թէ ինչպէս այդ փոքրիկ և համեմատաբար աղքատ ժողովուրդը՝ շնորհիւ իր աշխատասիրութեան՝ կարողանում է ապրել առանց նեղութեան և ծաղկեցնել իր բոլոր հիմնարկութիւնները։

Ես թէև միայն հարևանցի կարողացայ այցելել 34 հաստատութիւն Լօզանում և իւր շրջակայքում և մի երկու տասնեակ էլ այլ քաղաքներում, ամենուրեք ես պատահեցի նոյն սկզբունքին — այն է՝ «աշխատիր և ստացիր»։ Չնչին բացառութեամբ ոչ մի բան ձրի չի տրւում։ Որբանոցներում, ծերունիների ապաստարաններում և հիւանդանոցներում ապրելու համար վճարում են. և եթէ ինքը խնամուողը չի կարողանում դրամով և կամ իր աշխատանքով հատուցանել, փոխարէնը համայնքն է տալիս։

Սկզբում ինձ համար շատ տարօրինակ էր թւում։ Ես մտածում էի, թէ էլ ինչ բարեգործական հիմնարկութիւններ են, եթէ վճար են առնում. բայց երբ ծանօթացայ կազմակերպութեան, համոզուեցի, որ այդ է միակ և խելացի միջոցը բարեգործութիւն անելու։ Վճարում են շատ չնչին գումար, որպէս զի սկզբունքը չը խախտուի, բայց փոխարէն ստանում են լաւ բնակարան, սննդարար կերակուր, օրինակելի խնամք հիւանդութեան ժամանակ, չեն մոռացուած նաև հոգևոր և մտաւոր պահանջները։

Այնտեղ ոչ թէ ողորմութիւն են տալիս, այլ ձեռք են մեկնում, որպէսզի վայր չընկնի մարդը։ Եւ շատ յաճախ նպաստ ստացողը՝ շնորհիւ այդ տեսակ վերաբերմունքի, ոտքի է կանգնում և վերադարձնում է հասարակութեանը իւր վրայ ծախսած դրամը։ Այնտեղ աղքատին վերաբերւում են յարգանքով և օգնելիս չեն վիրաւորում նրա մարդկային արժանապատուութիւնը, այդ պատճառով նա էլ չի կորցնում իր մարդկային կերպարանքը և դառնում է հասարակութեան օգտակար անդամ.

Մեզանում, դժբաղդաբար, հակառակն ենք տեսնում։ Մենք պահանջում ենք, որ մեզ դիմողը լինի անպատճառ ցնցոտիների մէջ, խնդրի մեզ ստորացուցիչ ձևերով և ցմահ շնորհապարտ լինի մեր արած բարութեան համար։ Քանի քանի անգամ ես լսել եմ վրդովուած խօսքեր. «Նա ինչ աղքատ է, տեսէք ինչպէս է հագնուած», կամ թէ «այդ մարդը երեւի բոլորովին կարիք չունի, թէ չէ ո՞նց կարող էր այնպէս համարձակ խօսել»։ Իսկ քանիցս մերժուել են խնդիրներ լոկ այն հիմամբ, որ տանը գիտելիս գտել են մահճակալ, մէկ երկու կոտրած աթոռ, մի պահարան և կամ այլ կահկարասիք։

Հէնց այս է պատճառը, որ յաճախ խաբել են մեզ։ Հագել են ցնցոտիներ խղճահարեցնելու համար, իրանց սենեակի փոխարէն ցոյց են տուել մի նկուղ կամ դատարկ խոհանոց. հաւաքել են հարևանների երեխաներ և իբրև իրենց ներկայացրել։ Շատ անգամ էլ ազգանունները փոխելով, շալով երեսները ծածկելով երկրորդ անգամն են փորձել նպաստ ստանալու։ Էլ ո՞ր մէկը թուեմ... Կարծեմ այսքանն էլ բաւական է ցոյց տալու, թէ որքան սխալ է մեր տեսակէտը և ինչ վտանգաւոր հետևանքներ կարող է ունենալ մեր ժողովուրդի համար, եթէ այսպէս շարունակուի։

Օրինակ առնենք, ուրեմն, եւրոպական հիմնարկութիւններից և աշխատենք էլ աւելի լաւ տանել մեր գործերը։

(Կը շարունակուի) Իշխ. Մ. Թումանեան

---

## ԹԱՆԿՈՒԹԵԱՆ ԴԷՄ ԿՌՈՒԵԼՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԻՑ ՄԷԿԸ

Համաշխարհային պատերազմի աղէտներից մէկն էլ թանկութիւնն է, որ քանի գնում աւելի ու աւելի մեծ չափերի է հասնում։

Թանկութեան դէմ կռուելու մասին շատ գրուեց ու շատ խօսուեց։ Հիմնուեցին սպառողական խանութներ, որպէսզի հասարակութեան մատչելի գներով ապրանքներ տրուին։

Սակայն փորձը ցոյց է տալիս, որ ներկայ պայմաններում շատ չնչին կարող է լինել այդպիսի հիմքերի վրայ դրուած խանութների կատարած դերը հսկայական քայլերով առաջացող թանկութեան դէմ։

Հետզհետէ աճող թանկութեան պատճառներից մէկն էլ համարում են առևտրականների կողմից արհեստական կերպով մթերքների թանկացումը։ Մասամբ ճիշդ է այդ, բայց առևտրական ասելիս, պէտք է զանազանել մանր առևտրականներին խոշոր առևտրականներից, մանաւանդ գործարանատէրերից, որոնք արտադրում են նիւթեր և պահեստների տէրերից, որոնք թանկացման գլխաւոր դերն են կատարում։

Թէև մթերքներն արհեստականօրէն թանկացնում են մանր առևտրականներն էլ, բայց այդ բանին տեղիք են տալիս մեծ առևտրականները. ահա թէ ինչպէս։

Ընդունենք թէ իւղի արժէքը սակագնով նշանակուած է ֆունտը 60 կոպ. փոքր առևտրականը գնում է մեծից իւղ առնելու, վերջինս տալիս է նրան համաձայն սակագնի՝ առանց զեղչի, քանի որ պահանջը մեծ է, իսկ մթերքները՝ քիչ։

Փոքր առևտրականը ստիպուած ծախում է իւղը, ոչ թէ ըստ սակագնի 60 կոպէկով, ինչպէս գնել է, այլ 70 կամ 75 կոպէկով, քանի որ խանութի վարձի ու առևտրի իրաւունքի համար պետական տուրք է տալիս, վերջապէս ինքն էլ ապրել է ուզում։

Ահա թէ որտեղից է առաջանում արհեստականօրէն թանկացնելը։

Մեր կարծիքով թանկութեան դէմ կռուելու միջոցներից մէկն էլ այն կլինի, որ նախ քաղաքային վարչութիւններն ստիպեն մեծ առևտրականներին, որպէսզի փոքր առևտրականներին մթերքներ մատակարարեն այնպիսի զեղչով, որ վերջիններս հնար ունենան սակագնով վաճառելու։

Այդ նպատակով քաղաքային վարչութիւնը պէտք է նշանակի 2 տեսակ սակագին՝ մէկը փթով, իսկ միւսը ֆունտով վաճառողների համար։

Այս միջոցը որոշ չափով գնողներին կազատի հարստահարութիւնից ու սակագնի նշանակելը կարդարացնէ նրա նշանակութիւնն ու նպատակը։

Փարեմուզ

---

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՆԻՍՏ ԱՄԵՐԻԿԱՑԻՆԵՐԻ ՀԵՏ

Հ. Կենտ. Կոմիտէի նախաձեռնութեամբ ամսոյս 11-ին, երեկոյան ժամը 9-ին, ընկերութեան գրադարանի դահլիճում, տեղի ունեցաւ հանդիսաւոր նիստ, որին ներկայ էին Ամերիկայից հայ փախստականներին օգնելու համար եկած աստուածաբանութեան դոկտոր պաստոր Մակ Կալում, միստէր Հիլլ և Թիֆլիսի ամերիկեան հիւպատոս միստէր Սմիտը, գեր. Մեսրոպ եպիսկոպոսը, պետական Դումայի անդամ պ. Պապաջանեան, պ. պ. Լէօ Յ. Սպենդիարեան. Ս. Կանանեանց, հայկական կոմիտէի, Կովկ. Բար. Ընկ. անդամները, Նպաստամատոյց ընկ. ներկայացուցիչները և միւս հայկական հաստատութիւնների վարչական մարմինները, որոնք զբաղւում են փախստականների վիճակով։ Գրադարանի դահլիճը զարդարուած էր ծաղիկներով և գորգերով։

Ճիշտ ժամը 10-ին շնորհ բերին պատուաւոր հիւրերը, որոնց ընդունելով նախագահ պ. Ս. Յարութիւնեանը, ծանօթացրեց ներկայ եղողների հետ և ապա նիստ բացեց հակիրճ ճառով նկարա-

գրեց փախստականների դրութիւնը և յայտնեց փախստականների գործը այսուհետև կը դրուի աւելի ամուր հիմքերի վերայ շնորհիւ ամերիկայից եկած թարմ ույժերի։ Այնուհետև անգլերէն զեկուցեց Լոնդոնի Թերթի թղթակից պ. Սաֆրաստեան, որը ներկայացրեց փախստականական պատմութիւնը, դրութիւնը զանազան վայրերում, մի առ մի թուեց ազգային հաստատութիւնների և հայ կազմակերպութիւնների անունները, որոնք զբաղւում են գաղթականների օգնութեան գործով։ Խօսեց գեր. Մեսրոպ սրբազանը, որը յարգանք մատուցանելով այն մեծ ազգերին ինչպիսիքն են Ամերիկան, Շուէյցարիան և Անգլիան, որոնք իրենց ներկայացուցիչներին ուղարկել են հայ ազգի տառապանքները սփոփելու. շեշտեց այն հանգամանքը թէ բացի կառավարչական և մեր հասարակութեան նպաստներից, մեզ հարկաւոր էին և՝ չեզոք պետութեանց օգնութիւնը, որոնք թեթևացնէին կամ վերջ տալ կարողանային Թուրքիայի հայաջինջ քաղաքականութեանը։

Հայերէն գեղեցիկ ոճով խօսեց, պ. Մակ Կալումը, որի ճառի էութիւնը մօտաւորապէս հետևեալն էր.— Անգլիան, Ամերիկան և Շվէյցարիան շատ հետաքրքրուած են թէ Կովկասի և թէ Թուրքիոյ հայերով, որոնց կրած տառապանքների ձայնը ցնցելով տեղւոյն հասարակական սրտերը, արդէն կազմակերպում են ընկերութիւնն, օգնելու հայերին թէ նիւթապէս և թէ բարոյապէս, ուղարկելով իրենց ներկայացուցիչները։ Այդ միսիայով են եկել իրենք և իրենց վրայ պարտաւորութիւն կայ տրուած հաղորդելու՝ հայերի վիճակի մասին տեղեկութիւններ ամերիկայի այն ընկերութեան, որին ներկայացուցիչներն են իրենք։ Այդ ընկերութեան մէջ մտնում են ամենաբարձր հոգևորականները զանազան կրօնների, ինչպէս են Հռօմի պապի կարդինալը, հրէաների գլխաւոր րաբբին, նշանաւոր դրամատէրեր և հասարակական գործիչներ։ Այնուհետև աւելացրեց նա թէ օտար պետութիւնները ներկայումս միջամտում են հայերի օգտին։ Անգլիոյ մէջ արդէն կազմուած են երեք պատկառելի ընկերութիւններ՝ ա) առաքելական, որի մի առանձին բաժանմունքը բացառապէս զբաղուելու է փախստականների գործով, բ) Լորդ քաղաքապետի և գ) կարմիր խաչի ընկերութիւնները, որոնք նպատակ ունին հայ և ասորի քրիստոնեաներին օգնելու։

Յայտնեց որ ինքը տեսնուել է Նուբար փաշայի հետ, որը ժողովել է փախստականների օգտին 20,000 լիրա։ Ամերիկան ջանքեր է արել և անում թեթևացնելու հայերի վիճակը թէ Թուրքիայում և թէ զանազան վայրեր աքսորուածների համար, միաժամանակ պ. Մակկալումը շեշտեց, որ ամերիկան, ինչպէս չեզոք պետութիւն, աշխատում է կասեցնել հայերի կոտորածը. սակայն ի նկատի ունենալով Թուրք կառավարութեան ներկայ քաղաքականութիւնը, որը հիմնուած է միմիայն բռնի ուժի վրայ առ այժմ ոչ մի դրական հետևանքի չի կարողացել հասնել։

Խօսեց պ. Պապաջանեանը, որը շեշտեց թէ ամերիկայի այդ քայլը, որով նա օգնութեան է հասնում հայերին, մեծ քաջալերութիւն է ներշնչում մեզ, որովհետև միմիայն նիւթականը չէ, որ մարդուս սփոփում է այլ և բարոյականը, որի մէջ հայութիւնը ներկայիս մեծ կարիք է զգում։ Ողջունելով հիւրերի գալուստը պարոնը յոյս յայտնեց, որ Ամերիկան միշտ կը հնչեցնէ իր զօրեղ ձայնը ի պաշտպանութիւն հայերի և չի թոյլ տալ Թուրքերին հետևելու հայաջինջ քաղաքականութեան։

Նոյն ցանկութիւնը յայտնեց և պ. Յով. Սպենդեարեանը։ Պ. Համբ. Առաքելեանը նոյնպէս ողջունելով հիւրերի գալուստը շեշտեց այն հանգամանքը թէ միսիոնարական եկեղեցին դեռ հին ժամանակներից հայերիս մէջ տարածել է զարգացում և լուսաւորութիւն, իսկ այժմս այդ լուսաւորութեան զուգընթաց հանդէս է գալիս կազմալուծուած և հիւծուած հայ ազգին անտեսապէս և նիւթապէս ոտքի կանգնեցնելու և չը թոյլ տալու մի քրիստոնեա ազգի, զոհ դառնալու Թուրքերի ոճրագործութեան։

Նիստը փակեց նախագահը պ. Ս. Յարութիւնեանը յայտնելով հիւրերին շնորհակալութիւն և շեշտելով որ՝ հայկական բոլոր կազմակերպութիւններ պատրաստ են իրենց ուժերը դնելու նըրանց տրամադրութեան տակ, որպէսզի այն միսիան, որի համար եկել են լիովին կատարուի և թեթևանայ մեր տարաբաղդ ազգի վիճակը։

Հիւրերին պատուեցին թէյով, քաղցրաւենիքով ու նրանք ցրուեցին գոհ ու լաւ տրամադրութեան տակ կէս գիշերին անց։

---

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՇՈՒՐՋ

— Դրութիւնը Վանում.— Վանի շրջանի կառավարիչը հեռագրում է քաղաքների միութեան կովկասեան բաժանմունքի լիազոր պ. Ա. Խատիսեանին հետևեալը— «Ուտելիք չը լինելու պատճառով Վանի բնակչութիւնը, որ կերակրւում է միմիայն հացով, հիւծւում է։ Ոստանից և Արտամետից բնակիչները գաղթեցնում են Վան։ Հարկաւոր է հիմնել մթերքների պահեստներ, սննդատու կայաններ. անհրաժեշտ են մթերքների փոխադրութեան միջոցներ կերի, (ֆուրաժի) հետ միասին։ Ամէն մի հոգու սնունդը կը նստի առնուազ օրական 40 կ.

ԿՈՐԱԾ ԵՐԵԽԱՆԵՐ.— Վանի Զաուշպաշ թաղեցի Յովհաննէս Պողոսեանի որդի Գաբրիէլը, 6 տարեկան, որ էջմիածնում իր հօրաքրոջ՝ Իսկուհի Պողոսեանի մօտ էր լինում, կորել է.

Նոյնպէս Ջանիկայ մօտ Վանի Թազա-Քահրէզ թաղեցի Մաքրուհի Սեղրաքեան Մեսրոպեանի աղջիկ Արմենուհին, 9 տարեկան։

Սրանց մասին տեղեկութիւն ունեցողներից խնդրւում է յայտնել Երևանի Թեմական առաջնորդ Գերապ. Խորէն եպ.—ին։

---

## ԳԱՒԱՌ

Ղափանից գրում են.— Տարածուած է կարմրուկ (корь) հիւանդութիւնը, մի ամսից ի վեր ա. և բ. բաժանմունքների աշակերտուհիների մօտ 65%-ը բացակայում է փոխէփոխ։

Թեմական տեսուչ պ. Գէորգ Բէգեանը մեր շրջանումն է և շուտով կայցելէ Շրուխանց դպրոցը, ուր և շրջակայ դպրոցների ուսուցիչների մասնակցութեամբ տեղի կունենան փորձնական դասեր։

Դպրոցի դահլիճում շինւում է մշտական բեմ, իսկ ամսոյս 12-ին նահանգապետի թոյլտուութեամբ, կայանալու է ներկայացում յօգուտ դպրոցի չքաւոր աշակերտուհիների։ Խաղալու են 1. «Պատուի համար» Շիրուանզադէի և 2. «Медведъ» Չեխովի։

Թելաւ.— Այս տարի հայոց մէջ մեծ ոգևորութիւն է երևում։ Մի ամսուայ ընթացքում տեղի ունեցան երեք ներկայացում ու հանդէս, գլխաւորապէս շնորհիւ Հ. Բ. Ը-թեան ճիւղի վարչութեան նախագահ Տիկին Օլգա Պօզօեանի. Ներկայացրին «Խօլերա»ն, «Ես մեռայ»ն և Ռուսերէն վոդևիլ։ Պարահանդէսից և վիճակահանութիւնից յետոյ հացկերոյթին մասնակցեցին 50-ից աւելի հայ նորաւարտ սպաներ։ Հանդէսի զուտ արդիւնքը եղաւ 500 ռ. 15 կ.։

---

## ՀԱՅ ԳԱՂՈՒԹՆԵՐ

Մոսկուայում Ինժինէր-տեխնիկ պ. Յովհ. Ամիրեանի խմբագրութեամբ շուտով հրատարակուելու է «Армянкій Вѣстникъ» անունով շաբաթաթերթ. հասարակական-քաղաքական և և գրական բովանդակութեամբ։ Նպատակն է ռուս հասարակութեան լայն խաւերին ծանօթացնել հայոց անցեալը և կուլտուրան։

---

## ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԳԻՐ

### Կ. Հ. Բ. Ը-թիւն և Հ. Կենտ. Կոմիտէ

—

Հ. Կոմիտէի որոշումները.— Փախստականների անուանական ցուցակագրութիւնը։ Փոխարքայի դիւանատունը յանձնել է Կ. Հ. Բ։ Ը-թեան և նրա կից Հ. Կենտր. Կոմիտէին ցուցակագրել հայ և այլ փախստականներին Գանձակի, Թիֆլիսի, Երևանի, Ղարսի նահանգների ու Պարսկաստանի։ Ցուցակագրութիւնը լինելու է միօրեայ և փախստականների վայրերը բաժանուած 50 շրջանի։

Գործի կազմակերպութիւնը Կոմիտէն յանձնուել է լիազոր պ. Ա. Շարաֆեանին, յանձնելով 50 վկայական աշխատակիցների համար, Թիֆլիսի գաղթականների ցուցակագրութիւնը յանձնուեց գաղթականական մասնաժողովին։

— Որոշուեց յանձնել Ալէքսանդրապոլի առաջնորդ Արտակ վարդապետին 850 ռ. նպաստ այն գիւղերի համար, ուր սովորում են գաղթական երեխաներ։

— Վերին Աղդամի բաղնիսի շինութիւնը գաղթականների համար յարմարցնելու համար տալ 400 ռ.

— Ախալքալակում ապաստանած Տանձուցի փախստականների համար ուղարկել տեղի ճիւղին 500 ռ.

— Դիլիջանի փախստականների մէջ տարափոխիկ հիւանդութիւններ երևալու պատճառով տալ նրանց օգտին 300 ռ. թէյ և շաքար գնելու։

Կ. Հ. Բ. Ընկերութեան Ղափանի շրջանի Շրուխնանց գիւղի դպրոցի պահպանութեան նպաստում է Գասպար Տէր Մարգարեանը ծախսելով տարեկան 2,500 ռուբլուց աւելի. Վեհափառ Հայրապետը շնորհել է պարոնին օրհնութեան կոնդակ։

Արդ խորհուրդը ի նկատի ունենալով պ. Գասպար Տէր-Մարգարեանի ոչ միայն Շրուխնանց դպրոցի պահպանութիւնը, այլ և նրա բեղմնաւոր գործունէութիւնը ընդհանրապէս ազգային-կուլտուրական գործերում իր վերջին նիստում որոշեց միջնորդել Նորին Վեհափառութեան առաջ նորան վերոյիշեալ դպրոցի պատուաւոր հոգաբարձու հաստատելու։

### ՆՈՒԷՐՆԵՐ ՅՕԳՈՒՏ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ

Հ. Կ. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացել է՝

Թիֆլիս.— Առաջին մանկաւոր լոմբարդի ծառայողներից 17 ռ. 38 կ. Քաղաքային վարկի ընկերութեան ծառայողներից 13 ր. Եսայեանից.— 5 ր.

Արփա գիւղ — Յովակիմ քահանայ Խաչատրեանի միջոցով 30 ր.

Սուխումից.— Տեղական Հ. Կոմիտէի և Բար. ընկ. ճիւղից 1500 ր.

Ամերիկայից.— Ամերիկայի Հայկական կոմիտէից ազգային բիւրօյի միջոցով Կովկասի գլխաւոր կոմիտէից 8460 ր., Կովկասի գլխաւոր կոմիտէից 9000 ր.

***

Հայկ. Կենտ. Կոմիտ. շնորհակալութեամբ ստացել է

— Սամարայից Տ. Թագուհի Սարգսեանից և օր. Սաթենիկ Իսկանդարեանից մի պարկ հին և նոր շորեր։

— Խորոշից Մ. Պ. Իվանովայից մի կապոց շորեր։

— Դիլիջանից տ. տ. Փ. Մահտեսեանից, Տ. Պետրոսովից և Իսկուհի Պետրոսեանից 71¹/₂ արշ. բումազէ, 6 շապիկ և հին շորեր։

— Քութայիսից հայ կանանց կոմիտէից տ. Իսրայէլեանի միջոցով 211 կտոր նոր շորեր։

— Ջաքաթալայից հայ կանանց կոմիտէից, 70 կտոր նոր և 200 կտոր հին շորեր։

***

— Հ. Կենտ. Կոմիտէի արհեստանոցներում պատրաստուել է 2,050 վերմակ, 1,750 դօշակի և 850 բարձի մթէլ, 7,000 շապիկ, վարտիկ դերխա, բլուզ, անդրավարտիկ և խալաթ։ Նախկին պատրաստուածների հետ լինում է 6,000 վերմակ, 3,000 ներքնակի և 3,000 բարձի մթէլ և 10,000 զանազան հագուստ, Այս բոլորը շուտով կուղարկուին Ալէքսանդրապոլ և այլ վայրեր գաղթականներին բաժանելու։

***

— Հ. Կ. Կ. ուղարկեց Նոր-Բայազիտի որբանոցի համար 2,000 ռ.

***

— Հ. Կ. Կոմ. որոշեց հոգեհանգիստ կատարել Իգդիրում բծաւոր տիֆից վախճանուած իր լիազոր Մաթէոս Բաղդասարեանի համար։

### ԹԷՅԱՐԱՆ

— Թէյարանը (Գոլովինսկի պրոսպէկտ տ. Գ. Մարգարեանի) Դեկտեմբեր 1-ից մինչև 1-ը Յունվարի 1916 թ, ունեցել է մուտք վաճառումից 3,790 ռ. 65 կ. տուփերից 149 ռ. 63 կ. երստացել է տիկիններից նուէր 30 ռ., ընդամէնը 3,859 ռ. 76 կ. ծախս եղել է 2,412 ռ. 79 կ.։ Զուտ արդիւնք մնացել է 1,446 ռ. 89 կ.։

### ՃԱՇԱՐԱՆ

— Կ. Հ. Բ. Ը-թեան ճաշարանից բաց է թողուած յունուարի 1-ից մինչև 13ը 2,764 ճաշ,

### ՃԻՒՂԵՐ

Ախալցխայում Դեկտ. 29 և 30-ին քաղաքում, իսկ 5 և 6-ին Ս. Փրկիչ աւագ եկեղեցում, տեղական կարոտեալների օգտին կազմակերպուած հանգանակութիւններից և նուէրներից մուտք գոյացել է 473 ր. 53 կ.

Եկատէրինոդարի ճիւղը շարունակել է պատերազմի սկզբից միանալով Հայկական նորակազմ մարմիններին, միմիայն ուսանողներին և աշակերտներին նպաստ տալ. իսկ ընդհանրապէս գործել է պատերազմից յետոյ կազմուած զանազան նոր հաստատութեանց հետ։

— Այստեղ կազմուած է նահանգական կոմիտէ, որի մէջ է և բոլոր գաղթականների հայ կոմիտէի անդամը։

— Գաղթականական որբերի համար այստեղ բացուելու է որբանոց, որտեղ կարելի է տեղաւորել և հայ որբերին։ Դուցէ հնար լինի 50 հայ որբ տեղաւորել։ Ըստ կոմիտէի տեղեկութեան որբի ամսական 15 ռուբլուց աւելի չի նստիլ։ Տեղւոյս հայ հասարակութիւնը մինչև օրս պատերազմական և ազգային և թէ ընդհանուր կարիքների վրայ ծախսել է 100,000 ռ., ծխական հոգաբարձութեան բաց արած հիւանդանոցը (45 մահճակալով) նստում է տարեկան 15-16,000 ռ.։

Բաշ գիւղի ճիւղի վարչութիւնը որոշեց իր կողմից լիազօր ուղարկել Տաճկական Բաւէնի գիւղերում տեղաւորուած հայ փախստականների դրութեան ծանօթանալու։

Շրջանիս (Ռուսական Բաւէնի) թէ փախստականների և թէ նոր փոխադրուածների անհրաժեշտ է տեղաշոր, տաք հագուստեղէն, մանուանդ կանանց և երեխաների համար։

---

## Արտաքին տեսութիւն

Վերջին շաբաթուայ ընթացքում քաղաքական աշխարհի ուշադրութիւնը կենդրոնացած էր երկու խնդրի վրայ. նախ Չեռնոգորիայի զօրքի անձնատրութեան (կապիտուլա ցիայի) հարցը, որ պէտք է վերջանար Չեռնոգորիայի ու Աւստրո-Հունգարիայի անջատ հաշտութեամբ և ապա՝ Յունաստանը կուի դաշտը քաշելու հարցը։

Չեռնոգորիայի զօրքի անձնատրութիւնը ոչ ոքի համար ա-

Թիւրքերը ուզեցին իմանալ իրանց հպատակ անհաւատարիմների թիւը, որոնց շահագործում էին։ Գերմանացի վիճակագիրները ոչ մի ջանք չխնայեցին հայերի իսկական թիւը ներկայացնելու իրանց հիւպատոսներին և վերջիններն էլ տեղեկացնելով իրանց իշխանաւորներին, որոնք զինեցին և կառավարեցին մարդասպաններին... Մնացածը յայտնի է...

### ԳԱՐՇԵԼԻ ԵՂԵՌՆԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Ո՛չ, բոլորը յայտնի չէ դեռ, դեռ յայտնի չեն հայկական բոլոր արհաւիրքները որոնք կարծես թէ սովորական բաներ են դարձած և որ աշխարհին ձանձրացրել և անզգայացրել են արդէն։ Դեռ աշխարհին յայտնի չէ թէ ինչպէս խաչի պաշտօնեաներին սպանեցին վայրագօրէն, թէ ինչպէս Մարդինի հռոմէական կաթոլիկ վարդապետ Մալոյեանը մեռած է փայտի հարուածների ներքև, թէ ինչպէս Բէյրութի յոյն եպիսկոպոսին, մի շան կրծքին կապած, կախել են և տեսնուած է թէ ինչպէս շատ և շատ լատին վարդապետներ խոշտանգուած են Ներոնեան ձևով Անկիւրիայում և Տրապիզոնում։ Կառավարութեան աչքին դրանցից ոչ մէկը այլ ևս հաւատարիմ չի ճանաչւում։ Ես ձեզ կը մատնանշեմ վկաներից մէկը՝ պ. Gorinie-ն, որ մի քանի օր առաջ հասաւ Հռոմ և պատրաստւում է պատմութեան դատին յանձնել շատ ու շատ բաներ։

Մինչդեռ գերման-թիւրք վայրագութիւնը Կասպից ծովից մինչև Լիբանան գետերի նման արիւն հոսեցրեց, ինչ էր անում Կ. Պոլսի Առաքելական պատուիրակ Dolce վարդապետը։ Ես չեմ ուզում կարծել որ այս վարդապետը երիտասարդ թիւրքերի քաղցրութիւնից և այլ նպատակներից չէր խաբւում։ Կ. Պոլսում ծրագրւում էր ջնջել այն դաշնագիրը, որի հիման վրայ պաշտպանւում էր Արևելքի քրիստոնեաների գոյութիւնը մի ժամանակաւոր իշխանութեան հսկողութեան ներքև, յենուելով զինուորների, զրահաւորների և թնդանօթի ուժին՝ Բարձրագոյն Դռան քթի տակ։

Երևակայում էք այն ծիծաղելի տեսարանը, երբ Dolce վարդապետը Էնվէր փաշային ներկայացնում էր մի յայտարարութիւն վերջնագրի բովանդակութեամբ՝ Վատիկանի 50 Շվէյցերացիների կողմից, և այդ ծիծաղելի վերջնագրում պարզ երևում էր որ Վատիկանը ձեռնպահ է մնում բախդախնդիր քաղաքականութիւնից և այդ քայլը արել է լոկ ձևականութեան համար...

Կար ժամանակ աշխարհը ինչե՞ր էր երազում։

Երազում էր, որ Բենետիկտ. պապը կարող է զանազան միջոցներով ազդել Վիլհէլմ II-ի վրայ։ Սակայն չար լեզուները ասում են որ նա աշխատել է իր ականջները փակ պահել, և կամ թէ նա շատ ուշ է իմացել Բելգիայում և Սերբիայում կատարուած ոճիրները. իսկ շատերն էլ ասում են որ նա կարող չէր արգելք հանդիսանալ ոճրագործութեան։ Եթէ այդպէս է, այն ժամանակ կարելի է ասել որ Հռոմի պապի հեղինակութիւնն և ազդեցութիւնն ընկել է բոլորովին և կամ ընկնելու վրայ է...

Դէպի Երուսաղէմ...

---

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

ա. Կովկասեան ճակատ։ Համաշխարհային պատերազմի ամենից աւելի հետաքրքրական թատերաբեմը վերջին շաբթուայ ընթացքում հանդիսանում էր մեր Կովկասեան ճակատը։ Ջեւինի ստորոտներում սկսուած ռուսական առաջխաղացութիւնը որի մասին գրել ենք մեր վերջին տեսութեան մէջ, զարգանալով ստացաւ մի տարերային յորձանքի բնոյթ, որ մի արտակարգ արագութեամբ քշեց թիւրքերին մինչև Կարսի մատոյցները։ Թորթումի լճից մինչև Արածանի ակունքը, ամբողջ 120 վերստ տարածութեան վրայ, ռուսական զօրքն առաջ էր գնում գրաւելով թուրքերի ամրութիւնները, կոտորելով. գերելով զօրքը և խլելով նրանց ահագին քանակութեամբ պաշար և ռազմամթերք։ Թիւրքերը Քէօփրի քէօյի ամրութիւնների վրայ չկարողանալով դիմադրաւել ռուսներին՝ անկարգ նահանջով քաշուեցին Հասան-Ղալա։ Այս երբեմն անառիկ համարուած բերդը այժմ թիւրքերին չէր կարող առնել իր պաշտպանութեան տակ, ուստի սրանք Հասան-Ղալան էլ թողնելով իրենց շունչն առան Դևա Բոյնուի բարձունքների վրայ, որ ժամանակակից արուեստի պահանջների համաձայն ամրացուած է։

Պատերազմի դաշտում ընկած թշնամիներին սովորաբար չեն հաշւում, և մենք հնարաւորութիւն չունենք ճշտօրէն որոշել, թէ այս կռիւներում քանի հոգի են սպանուել թիւրքերից։ Սակայն ի նկատի ունենալով թէ ռուսների անակընկալ հարուածը, թէ թիւրքերի անկարգ նահանջը և թէ Կարնոյ բարձրավանդակի դաժան ձմեռը պէտք է ընդունենք, որ չափազանցութիւն չեն վերջին շաբաթուայ այն պաշտօնական հաղորդագրութիւնները, որոնք ասում են, թէ սկսած Ջեւինից մինչև Կարնոյ առաջապահ մատոյցները ամբողջ ճանապարհը ծածկուած է թշնամու դիակներով։ Չհաշուելով Ջեւինի մօտերքը բռնած գերիներին որոնց մասին գրել ենք նախորդ տեսութեան մէջ՝ այս վերջին կռիւներում, ըստ պաշտօնական տեղեկութեան ռուսների ձեռքն են ընկել 29 սպայ և 4208 զինուոր։ Բացի այդ՝ ռուսների ձեռքն են անցել Հասան-Ղալայի ահագին փայտի պահեստները, որոնք այս ցրտի ժամանակ կենսական անհրաժեշտութիւն են թիւրքերի, ինչպէս նաև ռուսների համար. սրանց ձեռքն են ընկել ահագին քանակութեամբ կենսամթերք և ռազմամթերք, մի քանի թնդանօթ ու գնդացիր, մեծ քանակութեամբ հրացաններ և թնդանօթաձգական մասեր, բուսական վրաններ, դաշտային խոհանոցներ, սայլեր ևայլն։

Ի նկատի ունենալով, որ Մահմուդ Քեամիլ փաշայի մօտ 200,000-անոց բանակից Թորթում լճի — Ճաևեան գետ գծի վրայ, ուր ռուսները սրարշաւ առաջ են շարժուել, կենդրոնացած է մօտ 120,000 զինուոր, պէտք է ընդունել, որ թուրքերն այս կռիւներում այնպիսի ծանր կորուստներ են ունեցել, որ եթէ ռուսներն այս անգամ ևս նրանց կազդուրուելու ժամանակ չտան՝ նրանց կորուստներն անդարմանելի կարող են համարուել...

Ներկայումս, ըստ ստացուած տեղեկութիւնների՝ կռիւները շարունակւում են գլխաւորապէս ռուսական զօրքի թևերը, իսկ կենդրոնը ամրանում է Դևա-Բոյնուի առաջ։ Ձախ թևը գործում է Մանազկերտի գծի վրայ և գործ ունի գլխաւորապէս քրդական հեծելազօրի դէմ, իսկ աջ թևը Թորթում լճից իջնում է դէպի Կարնոյ արևմտեան կողմը։ Այս թևը մեծ դեր ունի կատարելու, որովհետև Կարինն ամենաթոյլ կերպով պաշտպանւում է արևմտեան կողմից...

Այս ճակատի միւս գծերում համեմատաբար հանգիստ է։ Մի թեթև կռիւ եղել է վերջերս Վանայ լճի հարաւային կողմում, Ոստանի մօտ, որ վերջացել է թշնամու պարտութեամբ և նահանջով։

բ. Պարսկական ճակատ. Կռիւները շարունակւում են գլխաւորապէս Ուրմի և Ղում-Համադան գծերի վրայ։ Առաջին գծի վրայ ռուսները յաջողել են նորից յետ շպրտել թիւրքերին դէպի Ջակուրու գետի միւս կողմը, Իսկ երկրորդի վրայ ռուսները ենթարկուելով դէպի Գանտիլեանի լեռնանցքը դիմող թշնամու գերազանց ուժերի յարձակմանը՝ ոչ միայն յետ են մղում նրան, այլ և գրա-

ւում են Սուլթանաբադ քաղաքը, որ գտնւում է Համադանից 140 վերստ հարաւ-արևելք։

գ. Միջագետքի ճակատ. Յունուարի 9-ին Էսսինի մօտ զօրավար Էլմէրը բռնւում է թիւրքերի հետ արիւնահեղ կռւի, որ տևում է ամբողջ օրը։ Շնորհիւ այն հանգամանքի, որ Տիգրիսն իր ափերից դուրս գալով հեղեղել է կռւի վայրերը՝ թշնամի կողմերն այժմ պահպանողական դիրք են բռնել իրարից մօտ 1½ հազարամետր հեռու։

Մնացած ռազմաբեմերում այս շաբաթ տեղի ունէին սովորական դիրքերի թնդանօթաձգութիւն և հետախոյզ խմբերի ընդհարումներ։ Ուշագրաւ են յատկապէս սաւառնակային արշաւանքները։ Բալկաններում մէկ ուժեղ սաւառնակային ստորմից ռմբակոծում է Գեվգելու՝ բուլղարների բանակատեղը՝ նրանց վրայ թափելով մօտ 300 ռումբ։ Աւստրո-գերմանական ռազմաբեմում ֆրանսացիք 24 սաւառնակից բաղկացած մի ստորմիղով ռմբակոծում են Մեցը, իսկ գերմանացիք, փոքրիկ սաւառնակային խմբերով շարունակ հետախուզութիւններ են կատարում մեր ճակատի վրայ։

15 Յունուարի Ա. Ջամալեան

# Մահացուցակ

## † ԳԷՈՐԳ ՋՄՇԿԵԱՆ

Անցեալ տարուայ Դեկտեմբերի 28-ին Պետրոգրադում իր մահկանացուն կնքեց հայ բեմի վետերան Գէորգ Ջմշկեանը։

Հանգուցեալը մեծ զարկ է տուել թատրոնական գործին և նրա մահով հայ բեմը կորցնում է իր քրտնաջան աշխատողներից մէկին։

Գէորգ Ջմշկեանը եղել է Թիֆլիսի Հայ բեմի հիմնադիրներից առաջինը և 1860-ական թուականներից գլխաւոր գործակիցը Ամերիկեանի, Սունդուկեանի, Մանգինեանի և Պռօշեանի։



Հայ բեմին երկար ծառայելուց յետոյ ծերութեան պատճառով ստիպուած էր հեռանալ թատրոնական գործից։

Գ. Սունդուկեանի պիեսների մէջ ընդհանրապէս և Պէպօյի դերում մասնաւորապէս Գ. Ջմշկեանը նմանը չունէր։

Յայտնի են Գ. Ջմշկեանի «Իմ թատրոնական յիշողութիւնները» վերնագիրը կրող ընդարձակ գրուածքները, որոնք լոյս տեսան 1877 թուին «Փորձ»ի և 1880 թուին «Արարատ»ի մէջ։

Հանգուցեալը Թիֆլիսի Հայոց Դրամատիկ Ընկերութեան անդամ էր։

Համբաւաբերի յետագայ համարում կը տպուեն պ. Յ. Տէր-Գրիգորեանի յիշողութիւնները հանգուցեալի մասին։

# Գեղարուեստ

## ԵՐԿՈՒ ԵՐԷՑ

*(Հայ ու վրացի)*

### Ա.

1724 թուականի աշնան Բռան ափի հոյակապ պալատում, որ կառուցել էր շահադաւան վրացի Ռոստոմ արքան, նստում էր մահմեդադաւան վրաց Մուստաֆա*) արքան և հանգիստ կատարում էր Ղուրանի պահանջած բոլոր ծէսերը իրա դաւթի մզկիթում։

Երեք տարի էր միայն անցել, որ Վրաստանում և Հայաստանում Ալի դաւանողների տեղը բռնել էին Օմարի հետևողները, սակայն քրիստոնեայ ժողովրդին թւում էր թէ 3 հարիւր տարի է որ այրւում են դժոխքի կրակներում։ Արիւնարբու Օսմանլիները գայլերի պէս թափուած բնիկ տարրի վրայ, այնքան անողորմ ծուատեցին, որ սիրուն հայրենիքում տեղ ու դադար չը գտնելով շատերը գլուխ առած փախան հեռու երկրներ։ Թիֆլիսում և շրջակայ գաւառներում բնակիչներն այնքան տառապեցին, այնքան չարը քաշեցին դաժան թիւրքերի վայրագ տարրերից, որ օր ու գիշեր հառաչելով երանի էին տալիս պարսից հպատակ եղած ժամանակներին։

Երկրի անկուշտ, նոր տէրերը ոչ առևտրականների մօտ ապրանք ու փող թողին, ոչ երկրագործների հորերում ցորեն ու գարի. ամենը քաշեցին, ամենը յափշտակեցին։ Մուստաֆա արքայի փոյթը չէր, թէ ժողովրդի կայքն ու կեանքը հալւում էր։ Թիւրք իշխանաւորը քրիստոնէին անարգելու դիտաւորութեամբ չնչին պատճառի համար մէկի քիթն էր կտրում, միւսի ականջները, իսկ երբ մէկի վրայ կասկած էր ընկնում, թէ դաւաճանում է իշխանութեան, էլ պրծաւ, Գեանջու Ալադափու**) մօտ խեղճի մարմինը երկու կէս արած շպրտում էին շների առաջ։ Բոլոր դասակարգերի կեանքը խաւարած էր. փոքր ինչ յարգանք էին վայելում քահանաները, որ հոգևոր պիտոյքներ կատարելը պատրուակ բռնած եղ ու մում էին առնում ժողովրդականների տները։ Քրիստոնեայ բնակչութեանը ամենից շատ նեղացնողները Նարին Ղալայի պահակակէտի զինուորներն էին, որ ծածուկ թէ աշկարա ամեն կողոպուտ, սրիկութիւն անում էին ու մնում անպատիժ։

Աշնան մի երեկոյ յանկարծ փողը հնչեց Նարին Ղալայի գլխից, և ահ ու սարսափը պատեց քաղաքացոց։ Մի քանի վայրկեանից ետ թիւրք զինուորները ներքև թափուելով լցուան Թիֆլիսի նեղ փողոցները, բակերը ու սկսան ծեծել, ջարդել ձեռ ընկած քրիստոնեային. քաղաքի պարսպի հիւսիսային ու արևելեան կողմերի դռները բռնելով չէին թողնում ոչ մի անց ու դարձ։ Բնակիչներն ահից մտան տներն ու դռները կողպեցին։ Ողջ գիշերն անցկացրին սոսկումի մէջ։ Առաւօտը շշուկ տարածուեց, որ սպանուել է պահակի զինուորներից մէկը։ Որոնումներն ու խուզարկութիւնները երկու օր տևեցին։ Երրորդ օրուայ իրիկնադէմին, առաջին քրիստոնեան, որ փողոցում երևալով ուրիշներին վստահութիւն ներշնչեց, դա Անչխաբատի երէցն էր. բարձրանալով բերդի եկեղեցու արևմտեան նեղ փողոցով հասաւ մեծ երկաթապատ դուռն ու գաւիթ մտնելով հանդիպեց աւագ երէցին։

*) Վրացական անունն էր Բակուր.

**) Բաղնիսների մօտ.

— Անհամբեր քեզ եմ սպասում, տէր Թէոփիլ, խօսեց հայ երէցը, շնորհակալ եմ, որ նեղութիւն ես քաշել եկել։ Ի՞նչ գիտես այս նոր աղէտի մասին, քաղաքի քրիստոնեայ ժողովուրդը ջարդ մաղուեց անխրատ թիւրքերի ձեռից։ Ի՞նչ էին փնտրում, ինձ համար դեռ լաւ պարզ չէ։

— Ի՞նչ ասեմ, մեծ տէրտէր, հառաչեց վրացի երէցը, օր չի անցնում, որ ցաւ ու կրակ չը թափուի մեր խեղճ ժողովրդի գլխին, իսկ նա այժմ ոչ տէր ունի ոչ տիրական։

— Նստիր, սիրելիս, ասաց ծեր երէցը իրա կողքին սաքուի վրայ տեղ ցոյց տալով։ Ասա, ինչ է պատահել։

— Այն, ինչ որ ամեն օր, ամեն ժամ պատահում է մեր աշխարհի քրիստոնեաների հետ. Ն ա ր ի ն Ղ ա լ ա յ ի գաղաններից մէկը, որ շարունակ պրկում էր Շահ-Թախտի*) մօտով անցնողներին, երկու օր առաջ գտնուել է կածանի մէջտեղը անշունչ ընկած։ Փշրել են ճակատը։ Այդ աւազակի պատճառով քաղաք ու գաւառ տակն ու վրայ արին, վերջը մէկ հովւուի վրայ կասկած տանելով բռնեցին իբրև գ ա ն լ ի**)։ Շուտով դատավճիռ կը լսենք։ Միայն պատմում են, որ կալանաւորածին ինչքան տանջում են, որ խոստովանի յանցանքը, նա շարունակ երդւում, կրակն է ընկնում, որ ինքն անմեղ է...

— Ձեր Վախտանգ արքան 3 տարի առաջ իրա երկիրը Օսմանլիներին թողնելով, երևի մտքում կարծում էր թէ իրա ժողովրդին մեծ բարիք է անում. պարսիկների ոտնձգութիւններից զայրացած, վրդովուած այս աններելի սխալն արեց ու փէշը թափ տալով հեռացաւ Ռուսաստան։ Նա գառը գայլին պահ տուեց կամ ժողովրդին հեղեղից ազատելով կարկուտի տակ գցեց։ Խե՜ղճ ժողովուրդ, ափսո՜ս աշխարհ...

— Անտէր մնաց ժողովուրդը, անտէր մնացին վանքերը, ահա նայիր։ Երանի թէ միմիակ ինքը գնար, ասեց տէր Թէոփիլը, որովհետև նրա ետևից հեռացան նորա պէս երկրի մեծամեծ իշխանները, ազնուականները, բարձր հոգևորականներ 50—60 հոգի։ Թիւրքերի բերած զուլումը խիստ վառել էր ծեր երէցի հոգին. գլուխը կախ մտածում էր տէրողորմեայի հատիկները պտղունցի մէջ գլորելով։ Նա ոչ միայն արևելեան պատմութեան լաւ ծանօթ էր, այլ և զուրանի բոլոր մասերի բովանդակութեան ու շատ սիրում էր վէճի բռնուել Սէյդաբադի***) սէիդների, ալիմների հետ։

Քիչ լուռ մնալուց ետ ասեց.

— Տէր Թէոփիլ, դու էլ գիտես, որ արաբները մի քանի դար շարունակ եղել են Վրաստանի, Հայաստանի տէրերը. նրանց ամիրաները Թիֆլիս ոտ դնելով տարածել են գիտութիւն, քաղաքակրթութիւն, այստեղ հիմնել են զանազան տիպի դպրոցներ, հոգևոր ու աշխարհիկ ուղղութեամբ, մինչև անգամ շինել են աստղաբաշխարան հէնց այս լեռան գլխին, Շահ-Թախտի տեղը։ Գալով պարսիկներին, նրանք շատ անգամ են Թիֆլիսը արիւնով ու կրակով լցրել, բայց դարձեալ թողել են յիշատակելու արժանի հետքեր. ահա այս Ն ա ր ի ն Ղ ա լ ա ն, ահա Թիֆլիս քաղաքի պարիսպը և այլն։ Իսկ Ջինկիզ խանի ու Լէնկթիմուրի թոռներն ինչ շէնք կամ ինչ բարիքներ են բերել մեզ ու ձեզ։

— Այսօրուայ ցաւ ու կրակը, դառնացած վրայ բերեց վրացի երէցը, դրանից աւելի ուրիշ ինչ շնորք ունին։

Քիչ լուռ մնալուց ետ աւելացրեց.

— Մեծ տէրտէր, գիշեր, ցերեկ միտքն ու թախիծն ինձ մաշում են, որովհետև ձեռովս բան չի գալիս, որ ժողովրդին օգնեմ սրտիս ուզածի չափ։

— Հասկանում եմ քեզ, սիրելի եղբայր, շատ բնական է, որ այս դառն ժամանակներին ազնիւ սիրտդ խոր վշտով համակուած լինի, սակայն զուր ես կարծում թէ ձեռովդ բան չի գալ սիրած ժողովրդիդ օգնելու։ Հօ չե՞ս մոռացել մեր անցեալ դրոյցները։ Քաջ կաց, մենք կարող ենք ապագայ շատ աղէտների, արհաւիրքների առաջն առնել։ Հերոսութիւն հարկաւոր չէ, կատարենք միայն մեր պարտականութիւնը։ Մեր երկու ժողովրդները չնչին պատճառով իրարից քիչ սառած, հեռացած են։ Սէր քարոզելով դարձեալ մերձեցնենք նրանց, որ գալոց օրերին կարողանան մեր անուշ երկրի վրայ թափուող բարբարոսներին դիմադրել ու իրանց կեանքի թելը յաւիտեան անխզելի պահել։ Այս ցաւերը, որ այսօր հայն ու վրացին անքալով քաշում են փառասէր անձերի ձեռով գործուած պատմական սխալների հետևանք են։ Մենք աշխատենք դրանցից գոնէ մէկին ուղղելու առաքինութիւնն ունենալ։ Տխմարները ցաւերը կրում են անմռունչ, առանց պատճառը քըրքըրելու, բայց ես ու դու գիտակցում ենք, թէ ինչի՛ց են առաջացել, արի մեր Տէր Յիսուսի ակնարկած ջանասէր մշակների պէս աշխատենք, որոմները հեռացնենք մեր խնամքին յանձնուած ագարակից, որ յետագաները մեզ չը նզովեն, ինչպէս ես և դու նզովում ենք...

Ասաց երէցը խօսքը կիսատ թողնելով լռեց, չուզենալով մի առ մի թուել հայոց ու վրաց փառամոլ նախնիներին։

— Հասկանում եմ, մեծ տէրտէր, խօսքդ կորստաբեր քայլեր անողների մասին էր, որոնք չըգիտէին թէ պատասխանատու են մնալու յետագայ սերնդների դատաստանի առաջ։ Բայց ես պատրաստ եմ ամեն արտութեան, միայն թէ բազմատանջ ժողովրդիս ցաւերը փոքր ինչ թեթևացնեմ։

Ասաց երէցը գլուխը բարձրացնելով հարցրեց.

— Տեսնո՞ւմ ես, թէ շիաները և սիւննիները ինչպէս են իրար ատում։

— Ոչ միայն ատում, այլ և իրար անհուն վնասներ հասցընում, աւելացրեց վրացի տէրտէրը։

— Միանգամայն ճշմարիտ, տէր Թէոփիլ, բայց կար ժամանակ, երբ նրանք իբրև մահմէտականներ իրար հետ սիրով էին։ Ու երևակայիր, այդ մեծ չարիքի պատճառը դարձեալ եղաւ մի անհատ, մի Շահ Իսմայէլ։ Նա շատ քաղաքագէտ մարդ էր և իրա շահը փնտռող, շիա և սիւննի աղանդները մտցրեց մահմետականների մէջ, խորթութիւն գցելու նպատակով, որպէս զի պարսիկները պատերազմի ժամանակ խաթր չըպահեն, անխնայ կոտորեն թիւրքերին։

— Որովհետև աւելի հեշտ է գժտութեան խնձոր գլորելը, քան թէ քաղաքական փառամոլութիւնից հրաժարուիլը։ Շահ Իսմայէլի արարքի աղէտաբեր նշանները շուտով կերևան, այդ երկու աղանդի հետևողները շարունակ իրար կոտորելով, իրար թուլացնելով կը հասնին այն արգահատելի վիճակին, որին վաղուց գժտութեան վէրքի շնորհիւ հասել են մեր տարաբաղդ ժողովուրդները։

— Իմ խօսքը, սիրելի տէր Թէոփիլ, հէնց դրա վրայ է, իմ և քո նմանների սրբազան պարտականութիւն է սպեղանի դնել այդ վէրքի վրայ։ Եւ դժուար չէ։ Արի, լծակից եղբայրներ դառնալով մեր քրտինքներն իրար խառնենք ու ամեն եռանդով ջանանք այդ ատելութեան ոտը արմատախիլ անել միամիտ գայթակղուների սրտերից։

— Այդպիսի վեհ ու քաղցր լուծ քաշելու համար կեանքս չեմ խնայիլ, մեծ տէրտէր, փառաւո՛ր լինիս, այսօր քո մօտից գնում եմ հոգով թարմացած, սրտով մխիթարուած, քո առաջարկած ուխտը կը դառնայ իմ լաւագոյն փափագը, միամիտ եղիր։ Միայն դու աղօթիր, որ Աստուած վաղը մեզ համար լաւ օր լուսացնի, ասեց վրացի առաքինի երէց ու հրաժեշտ տալով զգոյշ ելաւ երկաթապատ դռնից ու իջնելով թիւրքի հրապարակը շտապ քայլերով անցաւ դէպի Սիոնի փողոցը, այնտեղից Մուստաֆա արքայի մզկիթի կողքով դէպի Անչիսխատի եկեղեցին։

(Վերջը միւս անգամ) Քամալեանց Ս.

---

*) Նարին Ղալայի արևմտեան աշտարակը.

**) Արինապարտ.

***) Ս. Սարգսի ետև Շահ Սէֆու ձեռով հիմնուած արուարձանը.

## ԵՐԿՈՒՆՔ

Ծուխ է բարձրանում սև հեռուներից,
Ծուխ է բարցրանում հայոց լեռներից.
Կրակ է բռնել Սասուն ու Զէյթուն,—
Երկնում է կրկին թշուառ հայութիւն...
Եւ աշխարհաւեր հրդեհի միջից
Մի ձայն է գալիս՝ այնքան տրամալից,
Մի ձայն է թռչում շէշտակի, փութով՝
Եկէք օգնութեան շուտով ու շուտով։
Ահռելի բոթից Մասիս, Արագած
Մեռել են կարծես՝ սաւանը հագած՝
Ու մեր աշխարհի սև երկնակամար
Սգում է, լալիս զոհերն անհամար.
Սգում են կոծում նորատի հարսներ՝
Անողոք բախտից խոցուած կարեվէր.
Իրենց նորածին մանուկներն առած՝
Փախչում են հեռուն՝ յոգնած ու սոված։
Ծուխ է բարձրանում նրանց շէներից,
Ծուխ է բարձրանում սև հեռուներից.
Սև ծուխ է պատել չքնաղ Հայաստան,
Աւեր են դարձել շէն գիւղ ու ոստան.
Կրակ է բռնել Սասուն ու Զէյթուն...
Երկնում է, երկնում թշուառ հայութիւն։
Ու գաղտագողի ամպերի տակից
Նայում է արփին՝ այնքան կարեկից.
Նայում է, խօսում այնքան յուսավառ.
—Աւերակների դու մռայլ աշխարհ.
Ձայն տուր, որոտա ամպրոպի նման,
Սարեր ու ձորեր հիմքից թող թնդան,
Հրաբուղխ ժայթքեն հսկայ գագաթներ,
Անդեղձ ժայռեր թռչեն դէպի վեր...
Նոր Գարուն թող գայ՝ սիրուն ծաղկաշատ,
Նոր երգ թող հնչուի՝ ազատ—հարազատ...
Ու յոյս է տալիս արևը Հայոց.
Շող է խոստանում՝ ճաճանչ ոսկէզօծ...
Երկնում է Հայը երկունք դարաւոր...
Ե՞րբ է ծագելու Այգը փառաւոր...

Յարութիւն Պետրոսեան

## ԻՆՉՈ՞Ւ ՉԵԿԱՐ...

Քեզմէ հեռու պանդուխտ եմ ես
Աշխարհի մէջ՝ մարդուն օտար...
Կանչեցի քեզ
Հուր կարօտով, իմ Սէ՛ր, ո՜ւր ես,
Ինչո՞ւ չեկար։

Խաւարի մէջ միշտ առանձին՝
Փնտռեցի քեզ օրեր երկար.
Եւ իմ հարցին՝
Մարդիկ անխօս անցան, գացին.
Ինչո՞ւ չեկար...

Ես տեսայ սէրը մարդուն,
Սիրտը մարդուն որ չի գթար...
Հոգիս արթուն
Լոկ քեզ սիրեց, սակայն ո՜ւր դուն
Ինչո՞ւ չեկար...

Յաւէտ կարօտ դէմքիդ լոյսին,
Իսկ դո՛ւ՝ անտես, ցնորք հազար.
Տարերն բոլին.
—Սէրդ սիրտ գայ վերջալոյսին.
Ինչո՞ւ չեկար...

Կարապ

# Մատենախօսութիւն

«Կ. Կոստանդեանց։ Ծաղկաքաղ արձակ և չափածոյ բանից ընտրեալ և բաւ. ագուցակ. շրջան առաջին. գ. տպագրութիւն փոփոխեալ և յաւելեալ։ Մոսկուա, տպարան Բ. Բարխուդարեանի. 1816 թ.»։

Մեր թեմական դպրոցների և ճեմարանների (Լազարեան և Գէորգեան) ստորին դասարանների համար կազմած այս ծաղկաքաղը՝ իր բովանդակութեամբ և գիրքով, աւելի հարուստ է, քան թէ առաջին երեք տպագրութիւնները, որոնցից երկրորդ տպագրութիւնը (հրատարակութիւն կենտրոնական գրավաճառանոցի, Տփխիս 1884 թ.) բաղկացած է 54 էջից և իւրաքանչիւր էջի մեծութիւնն է 12×19 սանտիմետր. այն ինչ նոր հրատարակութիւնը բաղկանում է 124 էջ, որոնց չափն է 15×23 սանտիմետր։ Թուղթը ազնիւ և բոլորգիրը գեղեցիկ, մի հանգամանք, որ մանկավարժական տեսակէտից ոչ պակաս յարմարութիւն է ընծայում մանուկ սերնդին, պահպանելով նրա աչքերը։ Հին տպագրութիւնից չեն մտել նորի մէջ չորս արձակ փոքր հատուած ԺԷ, ԻԳ, ԻԸ, ԾԶ, իսկ ոտանաւորներից հինգ հատուածները Ի, ԻԴ, ԽԴ, ԾԷ, և ԾԸ, որոնց փոխարինել են Տրդատ արքայ Հայոց (Ագաթանգեղոսից) 6 էջ. Նահատակութիւն Ս. Կուսին Հռիփսիմեայ (Ագաթանգեղոսից) 5 էջ. Քրմաց Տարօնոյ Մարտունքն (Զենոբ գլակից) 11 էջ։ Տեսիլ Ս. Գրիգորի Լուսաւորչին (Ագաթանգեղոսից) 4 էջ. Յաղագս մայրեացն տնկելոյ (Փաւստոս Բիւզանդից) 1 էջ. Շինուած Կարնոյ քաղաքին (Մ. Խորենացւոյ) 2 էջ. Ս. Հռիփսիմեանք (ոտանաւոր Կոմիտաս կաթուղիկոսի), Ս. Էջմիածին (ոտան. Սահակ Գ. Զորափորեցու)։ Յիշեալ հատուածների յաջող ընտրութիւնը Հայոց լեզուի վարժապետին յարմար առիթ է ընձեռում մանրամասնօրէն լուսաբանելու չորրորդ դարու պատմութեան յաւէրժայիշատակ հանգամանքները, որոնք խոր ազդւում են մանուկների սրտերում, ինչպէս գիտենք երկարամեայ փորձերից։ Սակայն ծաղկաքաղին կցած բառացուցակում եւ հանդէս է գալիս մեր յարգելի բանասէրի հմուտ ձեռքը. նա չի կազմել ընդհանուր բառարան, այլ յօրինել է սոյն բառացուցակ իւրաքանչիւր հատուածի համար, ինչպէս յաճախ տեսնում ենք գերմանական, ֆրանսական, անգլիական և այլ լեզուների ձեռնարկներում, որ մեծ դիւրութիւն է ընծայում աշակերտներին, մանաւանդ ստորին դասարաններում, ուր նրանք տակաւին վարժ չեն լինում խնդրելի բառը որոնելու բառարաններում։ Մասնաւորելով խօսք pro domo sua, այն է Լազարեան ճեմարանի մասին, ուր պ. Կոստանդեանցը տեսուչ է ներկայումս և որտեղ բոլոր առարկաները, բացառութեամբ հայոց լեզուի ու կրօնի, աւանդւում են ռուսերէն և այդ լեզուով է դաստիարակւում և գիտութիւն ձեռք բերում հայ աշակերտը, բնական է, որ ռուսերէնում նա աւելի քաջավարժ է, քան հայերէնում։ Ուստի, մեր համեստ կարծիքով, նպատակայարմար կը լինէր բառացուցակի բա-

ներին կցել նաև ռուսերէն բառեր, որպէս զի բառի նշանակութիւնը պարզուի: Օրինակ էջ 69 կարդում ենք՝ «յատանել, քշել, էտել, թերատել»․ աշակերտը ինչ հասկանայ այս մեկնութիւնից. իսկ եթէ կցէիք նաև ռուսերէն подстричь, подчистить деревья, անտարակոյս, նա կը հասկնար: «ամբարիշտ, չար մարդ», աշակերտը այդ բառը կըհասկանայ բառացի «злой человѣкъ», այնինչ այդ նշանակում է нечестивый, беззаконный.. «բառնալ, վերցնել».ինչպէս հասկանալ. взять? поднять? բնագրում «բարձցուք զյիշատակ նորա յերկրէ». ուր՝ բառնալ նշանակում է՝ уничтожить, прекратить, пресѣчь: Ռուսերէն բառերի օժանդակութիւնը աշակերտին նպաստում է հայերէնի նրբութիւնը ըմբռնելու: Բառացուցակից յետոյ գալիս է այբբենական ցանկ բառից և բնագրի ցանկը:

Մ. Շովրեան

## Քրոնիկոն

*Վարանցով-Դաշկովի մահը.*—Կովկասի նախորդ փոխարքայ կոմս Ի. Ի. Վորոնցով-Դաշկովը երկարատև հիւանդութիւնից յետոյ յունուարի 15-ին վախճանուեց Ղրիմի Ալուպկա քաղաքում, իր կալուածքում:

* * *

*Վրաստանի նոր էկզարխ* Պլատոն արքեպիսկոպոսը ամսիս 12-ին ժամանեց Թիֆլիս:

* * *

*Նորայր Բիւզանդացի* ականաւոր հայագէտը մեռել է Վենետիկ քաղաքում:

* * *

Այսօր Թիֆլիսում գոյութիւն ունեն երեք նոր հիմնուած ազատողական միութիւններ. «Վոզրոժդենիէն» վագզալնայա փողոցում, որի հետ միանում է «Օրխոնիննիէ» ընկերութիւնը, որոնց անդամները բանւորական աշխատաւոր դասից են: «Թիֆլիսի Կոոպերատորը» Գոլովինսկում, «Քաղաքի ծառայողները» Վիլեամինովսկայում, որոնք մեծ աջողութեամբ գործում են շահագէտների դէմ:

* * *

*Աւետիս Ահարոնեանը* ինչպէս հաղորդում է «Հորիզոն» վերադարձին բաղւում հիւանդացել է: Մտադրութիւն կայ հիւանդին փոխադրել Թիֆլիս, Արամեանցի հիւանդանոցը:

* * *

*Բրուսով* յայտնի ռուս բանաստեղծը ամսիս 13-ին Արտիստական թատրոնի դահլիճում կարդաց մի դասախօսութիւն, Հայոց բանաստեղծութեան մասին՝ սկսեալ հնագոյն ժամանակներից մինչև մեր օրերը:

Այս շահեկան և շատ կողմից հետաքրքրական դասախօսութիւնը գրաւել էր Թիֆլիսի ոչ միայն հայերին այլ վրացի և ռուս բազմաթիւ ունկնդիրներ: Դահլիճում ասեղ քցելու տեղ չկար, շատ շատեր ոտքի կանգնած ուշխուշով լսում էին $3\frac{1}{2}$ ժամ տևող դասախօսութիւնը: Մեծանուն բանաստեղծը միւս օր մեկնեց Էջմիածին և Երևան իւր դասախօսութիւնը կրկնելու:

* * *

*Հայոց Ազգագրական Ը-թան* դահլիճում ամսիս 16-ին շաբաթ օր՝ Մ. Աբեղեանը դասախօսեց Ազգ. Ընկերութեան անդամ երջանկայիշատակ Կարապետ եպիսկոպոսի գրական-գիտական գործունէութեան մասին: Իսկ Միսաք Թոսախեանը նրա ուսուցչական և եկեղեցական-վերանորոգչական գործունէութեան մասին:

* * *

*Գրական-գեղարուեստական* սալոնում Գ. Վարդանեանը ամսիս 16-ին տուեց մի ընդարձակ զեկուցում Բայազիտի ու Դիադինի շրջանի հայ և եզդի փախստականների և տեղացի հայերի մասին:

---

## ՎՐԱՑ ՄԱՄՈՒԼԻՑ

Մօտ մի ամիս առաջ Սոխումի քաղաքային ինքնավարութիւնը վճռել էր խնդրամատոյց լինել տէրութեան, որպէս զի Սև ծովի ափին Թիւրքիայից գաղթած հայերին, որոնք ծխախոտի մշակութեամբ են պարապում, իրաւունք տրուի սեպհական հողեր գնելու և ռուսահպատակ դառնալու: Այս որոշումը ահագին աղմուկ հանեց վրաց մամուլի մէջ և յարձակման ենթարկուեց քաղաքագլուխ պ. Ն. Թավդգիրիձէն:

Արդ սա ի պատասխան վրաց մամուլի մի մասի՝ զետեղել է «Սախալխո գազէթի» թիւ 472-ի մէջ մի ընդարձակ յօդուած, որից թարգմանաբար բերում ենք Սուխումի շրջանի հայերին վերաբերեալ մասը:

Յօդուածի վերնագիրն է «Միջազգային անհամաձայնութիւն թէ ուղղամիտ յարաբերութիւն» բնաբան ունենալով Շոթա Ռուսթավելու խօսքը «Ճշմարիտ գործը հրաշք է կատարում».

«Շատ բաղդաւոր կը լինէինք մենք վրացիներս, որ մեր հին իմաստութիւնից —մշակուած մեր ազատ ու ինքնուրոյն կեանքի միջոցին— մեր աշխարհահայեցողութիւնից չը շեղուէինք: Հին կուլտուրայի ժողովուրդ ենք, շատ դառն հանգամանքներ տեսած ու մշակած ենք դարաւոր փորձառութեան շնորհիւ՝ մեր ժողովրդի հոգեբանութեան համեմատ առանձին հայեացք կեանքի զանազան երևոյթների մասին: Բայց նոր կուլտուրայի և կրթութեան ազդեցութեան տակ մեր մտածող հասարակութիւնը բոլորովին այլ հաւատով մկրտուեց: Մեր հին իմաստութեան և փորձառութեան արգասիքը —մեր զգօն հայեացքը՝ կեանքի հրատապ հարցերի մասին՝ համարեցին ծիծաղելի և նշան տխմարութեան և անգիտութեան.

Ճիշդ է ժամանակակից եւրոպական կարծիքն ու մտածողութիւնը հետևանք է մշտապէս առևտրական յարաբերութիւնների մէջ տիրապետող փիլիսոփայութեան, բայց թէ որքան օգտակար և ցանկանալի է այս, ցոյց կը տայ ներկայ և ապագայ կեանքը:

Փոխանակ Պլեխանով-Միլիւկովի կարծիքներով և հրահանգներով ղեկավարուելու կեանքի մէջ, աւելի լաւ կը լինէր, զըննէինք խորը կերպով մեր ժողովրդի պատմական գործառնութիւնը և փորձառութիւնը: Ոչ մի ժամանակ մեր երկարատև պատմական կեանքի շրջանում այնքան հրատապութիւն, անհամաձայնութիւն և անտանելի յարաբերութիւն չի եղած մեզ մօտ գաղթած ազգերի հետ, որքան այս կուլտուրայի բարձր զարգացման դարում: Մեր լաւագոյն պետական իմաստութեամբ յայտնի թագաւորները առանձին հիւրասիրութեամբ էին վարւում մեր աշխարհը գաղթող օտարականների հետ: Ո՞վ բնակեցրեց Կախեթիայի մէջ տեղում հայերին, եթէ ոչ մեր գոյութեան համար տանջուող, մեր երկրին հաւատարիմ Հերակլ թագաւորը: Ինչո՞վ բացատրել, որ մինչև 19 դարու կէսը հայերը Թիֆլիսի մէջ իրանց համարում էին վրացի:Մի՞թէ հետաքրքիր երևոյթ չէ, որ հրէաները ոչ մի տեղ աշխարհի երեսին այնքան ընդունուած և ամեն տեսակ իրաւունք վայելած չեն, ինչպէս մեզնում: Այս հետևանք էր մեր հին կուլտուրայի մեր ժողովրդի հինաւուրց իմաստուն հայացքի:

Այժմեան Նիցշէ Պշիբիշևսկուն հետևողները քրիստոնէութիւնն էլ ծաղրի են ենթարկում և Տոլստոյի ուսուցումն տկարամիտ ծերունու դատողութիւններ են համարում, սակայն կեանքը ունի իւր փիլիսոփայութիւնը: Ով հպարտ՝ վատոգի և չարամտութիւն է գործում, նա ինքն էլ պատիժ է կրում, «ով կը բարձրացնէ սուրը...»

Մեր ժողովրդի աշխարհահայեցողութեան մշակման մէջ մեծ նշանակութիւն և ազդեցութիւն ունէր քրիստոնէական ուսուցումն և փիլիսոփայութիւնը: Ապա ուրեմն մենք մեր ամեն կենսական գործերում և միջազգային յարաբերութիւններում դաւանում ենք մեր ժողովրդի հաւատին, երբ քրիստոսի ուսուցման և փիլիսոփայութեան հակառակ ենք դատում և գործում:

Այս առաջաբանից յետոյ տեսնենք, թէ ինչ մեղք գործեցինք

ես և Սոխումի վրացիներից կազմած քաղաքային ինքնավարութիւնը, երբ Ռուսաստանի հետ պատերազմող տէրութեան քրիստոնեայ հպատակների համար ուղղակի վարմունք ուզեցին։

Երբ Մեծ իշխանի առաջարկութեան համաձայն Սոխումի քաղաքային ինքնավարութիւնը քննում էր Սոխում քաղաքի ձայնաւորների ընտրութեան հարցը (իմ նշանակած զանազան հարցերը առաջուց քննելուց յետոյ), մէկ ռուս ձայնաւոր հարց բարձրացրեց հեռուից գաղթած մեր հարևան գիւղացիների շահերի հետ բազմաթիւ կապերով կապուած քրիստոնեաների հետ արդար յարաբերութիւն հաստատելու համար. ինչ պիտի ասէի ես, իբրև խորհրդի նախագահ, կամ ինչ պիտի անէին վրացի ձայնաւորները։ Միթէ անընդունելի է այն կարծիքը, թէ արդարացի յարաբերութիւն հաստատելը մեր դրացիների հետ մեզ ձեռնտու կամ օգտակար չէ։ Կարելի է ուրիշ ազգի ներկայացուցիչը այս դէպքում այդ մտքով ղեկավարուէր, բայց ճշմարիտ վրացուն այսպիսի դատողութիւն վայել չէ։ Իսկ մենք բոլոր մեր դաստիարակութեան, մեր պատմական աւանդութեան, այնպիսի յատկութիւն ենք մշակել, որ սովոր չենք օգտուելու մինչև անգամ վիրաւորուած, շղթայակապ և զինաթափ թշնամու դրութիւնից։ Մեր ժողովրդական իմաստութիւնը մեզ սովորած է «թշնամուն սիրով ընդունիր»։ Միայն ի բնէ թոյլ և հոգեպէս տկար մարդու յատկութիւնն է ուրիշի անօգնական դրութիւնից օգտուելը, այս ճանապարհը ցոյց ենք տալիս նրանց, որոնք այդ եղանակով են ուզում ջուրն անցնել։ Ես մեծապէս ուրախ եմ, որ իմ և Սոխում քաղաքի վրացի ձայնաւորների կարծիքն ու գործողութիւնը հարևան ազգի վերաբերեալ սօցիալ-դեմոկրատ մամուլի հայհոյանքի առարկայ դարձան։ Նրանց ամբողջ կարծիքն ու դատողութիւնը ինքնավարութիւն պահանջողներին հակառակ այս տաս տարուայ ընթացքում հիմնուած էր այն միակ անհերքելի ճշմարտութեան վրայ, որ եթէ վրացիները ստանան ինքնավարութիւն, հայերի շահերը կը վտանգուին։ Սոխումցիների վարմունքը կատարեալ պատմական իրողութիւն է որ ճշտօրէն արտայայտում է այն կարծիքը, որ եթէ իրօք երբ և իցէ վրացութեան ձեռքում մնայ գաղթած ազգի վիճակի տնօրինութիւնը — նրա կարիքի քննութիւնը և որոշումը, միշտ ճշմարտութեան զգացմունքը կը յաղթէ։ Այդպէս էր մեր անցեալ կեանքում և այսպէս կը լինի, որքան կը մնայ մեզ վրացական յատկութիւնը և բնաւորութիւնը։ Եթէ որևէ հաշիւ ունենք հարևանների հետ, կարող ենք սովորական նորմալ պայմաններում էլ կռուել մեր շահերը պաշտպանելու. հակառակորդի նեղ դրութիւնից անտակտ կերպով օգտւում է միայն անազնիւ զգացմունք ունեցողը»։

---

## ԿԱՐԾԻՔ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-Ի ՄԱՍԻՆ

«Кавк. Сл.» №6ում «Համբաւաբեր» շաբաթաթերթի մասին տպագրուած է պ. Մինաս Բէրբէրեանի յօդուածը, որից հարկաւոր ենք համարում բերել քաղուածքներ։

«Մենք չենք ուզում, ասում է յօդուածագիրը բանակռիւ սկսել նրանց հետ, որոնք գտնում են թէ Կ. Հ. Բ. Ընկ. իրաւացի չէ հրատարակչական գործով պարապելու կամ շաբաթաթերթ հրատարակելու, սակայն ցանկանում ենք այս տեղ արտայայտել մեր հայեացակէտը այդ գրական ձեռնարկութեան նպատակի մասին։

Այդ ուղղութեամբ մենք կը ցանկայինք, որ «Համբաւաբերը» լինէր ոչ միայն Կ. Հ. Բ. Ընկ. օրգանը այլ և բոլոր հայ կուլտուրական-բարեգործական ընկերութիւնների։

Նոյն հայեացակէտն ունի նաև շաբաթաթերթի խմբագրութիւնը ինչպէս այդ երևում է այն կոչից, որ արտատպած էր ինչպէս առաջնորդող շաբաթաթերթի երկրորդ համարում։

Հէնց այդպիսի թերթի կարիքը վաղուց զգացւում էր, որը կարողանար միախմբել հայ կուլտուրական հիմնարկութիւնները, ընկերութիւնները և ձեռնարկութիւնները։

Հեռու կուսակցական բանսարկութիւնից իր ամենօրեայ աշխատանքը կատարելով այդ շաբաթաթերթը մի կողմից կարող է ուղեցոյց հանդիսանալ զանազան կուլտուրական ընկերութիւնների, որոնք տարածուած են թէ Կովկասում ցրուած գիւղերում և քաղաքներում և թէ Կովկասից դուրս. իսկ միւս կողմից հաստատել կապ այդ կազմակերպութիւնների և գործիչների մէջ, մշտապէս հաղորդէր թէ ինչ է կատարւում այլ տեղերում կամ ինչ պէտք է կատարուի։

Իհարկէ նախապատւութիւնը կտրուի Կ. Հ. Բ. Ընկ. ինչպէս հիմնադրի ու հրատարակչի յիշեալ օրգանի և ինչպէս մի ընկերութեան, որը ունի շատ աւելի հիւղեր, քան միւս հայկական ընկերութիւնները։

Այդ շաբաթաթերթը կարող է տալ շատ նոր ու օգտակար գործ իր այն հեռաւոր և խուլ վիճակների ընթերցողներին, որոնք ծարաւի են խելացի խորհուրդների և ձեռներեցութեան՝ իրենց փոքր բայց կուլտուրական գործերում, փախստականներին խնամելու աւելի նպատակին հասնող ձևերի, պահեստի զինուորների կամ կամաւորների ընտանիքների, անկարների օգնութեան, մարդասիրութեան նոր եղանակների, կիրակնօրեայ կամ շարժական դպրոցների, ժողովրդական տների, գիւղական ժողովարանների, գրադարանների կամ կրթողական դասընթացների մասին։

Այդ բոլորի մասին կարելի է գրել, այդ ամէնը հարկաւոր է ընդհանրացնել, և ուղղել որոշ ղեկավարութեամբ դէպի բոլոր հայ կրթական-բարեգործական գործողութիւնները։

Շաբաթաթերթը խմբել է իր շուրջը զանազան բանակների աշխատակիցներ և պէտք է կարծել, որ ընդհանուր ուժերով կը յաջողի այդ օրգանը դնել իր բարձրութեան վրայ։

Բացի «մասնագիտական» յօդուածներից. և տեղեկատու բաժնից շաբաթաթերթը, ի հարկէ, պէտք է ունենայ և միւս բաժինները. գեղարուեստական, հասարակական, քննական և այլն։ Ի հարկէ փորձը ցոյց կտայ, որ այս բաժինները ժամանակին կը բռնեն երկրորդական տեղ։ Արժանի է ուշադրութեան իշխ. Գ. Մ. Թումանեանի յօդուածը՝ «Զեմստւօ մտցնելու նախօրեակին»։

Մարդասիրութեան խնդիրներ շօշափում են իրենց յօդուածներում պ. Վ. Խորէնին և պ. Տարաֆեանը։

Վերջը յօդուածագիրը ասում է, որ թերթը «թողնում է հաճելի տպաւորութիւն և եթէ պահպանի իր ընդգծած շրջանը, անշուշտ կը դառնայ մի օգտակար և կարևոր երևոյթ հայոց կեանքի»։

---

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Հանգուցեալ ինժ. Խաչատուր Նազարբէգեանի վշտահար այրի Սոֆիա Նազարբէգեանը իր անմոռանալի ամուսնու թաղման օրը ուղարկել էր ինձ 500 ր. գործադրելու հանգուցեալի յիշատակին ըստ իմ բարեհայեցողութեան։ Այդ գումարը ես բաժանեցի հետևեալ կերպով. 1) 100 ր. Կ. Հ. Բ. Ընկ. ճաշարանին, 2) 50 ր. Գայիանեան օրիորդաց դպրոցի չքաւոր աշակերտուհիների ճաշարանին, 3) 50 ր. գաղթական դպրոցների աշակերտական ճաշարանին, 4) 200 ր. Հ. Կենտրոնական Կոմիտէին գաղթական երեխաների դպրոցի օգտին 5) 100 ր. Ջանգեզուրի գաւառի, ուր գտնւում են հանգուցեալի հանքերը, հայոց գիւղական դպրոցների կրթական կարիքների համար։

Սամսոն Յարութիւնեան

---

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Փօղոսեանի    Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1    Дозволено военной цен-

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 4

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

### ԴԻԼԻՋԱՆԻ I ԱՊԱՍՏԱՐԱՆ

(Շարունակութիւն)

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնող կամ մէկ ծնող | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 106 | Յակոբեան Վարդանուշ | Փախնի | 11 | չունի | | ոչ | |
| 107 | Յովհաննիսեան Փարէ | Խօշգալա | 14 | մայր | Էջմիածին | այո | |
| 108 | Յովհաննիսեան Գաբրիէլ | Վան | 3 | չունի | | ոչ | |
| 109 | Յովսէփեան Թուշուն | Կզլդաղ | 12 | մայր | Երևան | » | |
| 110 | Յակոբեան Պետրոս | Դլուր | 10 | չունի | | » | |

### ԴԻԼԻՋԱՆԻ II ԱՊԱՍՏԱՐԱՆ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Շնորհիկ | Վանեցի | 8 | հայր | Բիթլիս | ոչ | |
| 2 | Աւետիսեան Սուլթան | Կէործաթցի | 10 | մայր | Երևան | այո | |
| 3 | Աւետիսեան Խումար | » » | 14 | » | » | ոչ | |
| 4 | Աւետիսեան Կիւլիզար | » » | 13 | » | » | » | |
| 5 | Ասլանեան Նազլու | Շուշանցի | 14 | » | Մարգարա | » | |
| 6 | Աստուածատրեան Աղաւնի | Ալճաւազցի | 10 | ունի | Էջմիածին | » | |
| 7 | Աւդալեան Աթլաս | Խոշկելտցի | 12 | ունի | Ջպուխլու | » | |
| 8 | Աստուրեան Սաթենիկ | Իշխան գիւղ | 10 | մայր | Էջմիածին | » | |
| 9 | Անտոնեան Արեգնազան | Առճիշցի | 8 | չունի | — | » | |
| 10 | Աբրահամեան Մարիամ | Փեզոնտաշտ | 13 | չունի | — | » | |
| 11 | Աստուրեան Պայծառ | Ալճաւազցի | 5 | ունի | Էջմիածին | » | |
| 12 | Աբրահամեան Սարէթ | Կզզիցի | 10 | մայր | » | » | |
| 13 | Աւետիսեան Հռիփսիմէ | Առանգիղ | 11 | » | » | » | |
| 14 | Աւտալեան Յակոբ | Խոշկելտցի | 9 | ունի | Ջպուխլու | » | |
| 15 | Աւետիսեան Յովհաննէս | Լջացի | 11 | չունի | — | » | |
| 16 | Ալեքսանեան Համբարձում | Ակնցի | 10 | » | — | » | |
| 17 | Աւետիսեան Անդրանիկ | Կանջրեցի | 10 | մայր | անյայտ է | » | |
| 18 | Ատոյեան Երուանդ | Կէօկչայ | 10 | » | Էջմիածին | » | |
| 19 | Աւետիսեան Յարութիւն | Տօղխա | 10 | չունի | — | » | |
| 20 | Արթոյեան Մխիթար | Շիրվանեցի | 11 | հայր | Էջմիածին | » | |
| 21 | Ասլանեան Յովհաննէս | Ապախացի | 12 | չունի | — | » | |
| 22 | Արշաւեան Աղեքսանդր | Ղլաթացի | 11 | » | — | այո | |
| 23 | Աբրահամեան Սարէթ | Կզզեցի | 10 | մայր | Էջմիածին | ոչ | |
| 24 | Գարեգինեան Մայրիկ | Վանեցի | 8 | մայր | Էջմիածին | այո | |
| 25 | Գրիգորեան Եղիսաբէթ | Շուշանցի | 10 | հայր | Ռումանիա | ոչ | |
| 26 | Գալուստեան Սամին | Փշանեցի | 14 | չունի | — | » | |
| 27 | Գասպարեան Թանկիկ | Փոխներցի | 13 | » | — | » | |
| 28 | Գէորգեան Տիգրանուհի | Կոճրեցի | 10 | մայր | Իգդիր | » | |
| 29 | Գասպարեան Եղիսաբէթ | Կաւաշցի | 10 | չունի | — | » | |
| 30 | Գրիգորեան Ճանթազ | Գլաթացի | 12 | չունի | — | » | |
| 31 | Գրիգորեան Ազնիւ | Մանազկերտ | 11 | չունի | — | » | |
| 32 | Գէորգեան Ջաշմա | Վանեցի | 4 | մայր | Էջմիածին | » | |
| 33 | Գէորգեան Մարգարիտ | Խժշկեցի | 9 | ունի | » | » | |
| 34 | Գոտիգինեան Նոյեմզար | Շատախցի | 12 | չունի | — | » | |
| 35 | Գրիգորեան Հրանոյշ | Կիապօլցի | 13 | չունի | — | » | |
| 36 | Գրիգորեան Գասպար | Իլիճացի | 11 | չունի | — | » | |
| 37 | Գէորգեան Մարտիրոս | Ապադցի | 13 | չունի | — | » | |
| 38 | Գրիգորեան Մկրտիչ | Վանեցի | 11 | հայր | Պոլիս | » | |
| 39 | Գասպարեան Արծրունի | Պաղներցի | 5 | չունի | — | » | |
| 40 | Գարեգինեան Ազատ | Ալճաւազցի | 4 | չունի | — | » | |
| 41 | Գէորգեան Եալտուզ | Խժշկեցի | 5 | » | — | » | |
| 42 | Գէորգեան Արոյն | Ապուղցի | 12 | » | — | » | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 43 | Գրիգորեան Սիրարփի | Կողբանցի | 6 | մայր | Էջմիածին | ոչ |
| 44 | Գարեգինեան Սարգիս | Կիւմնենցի | 10 | » | Դիլիջան | » |
| 45 | Գաբրիէլեան Վարդ | Գենդանեան | 12 | չունի | — | այո |
| 46 | Դաւիթեան Մաքրուհի | Խորթումցի | 10 | ունի | Դիլիջան | ոչ |
| 47 | Դէյրոսեան Լեոն | Լջացի | 10 | մայր | » | » |
| 48 | Եղոյեան Վարդուհի | Կէչոխ | 12 | չունի | — | ոչ |
| 49 | Եղիազարեան Աղաւնի | Կարկառ | 15 | մայր | Երեւան | » |
| 50 | Եղիազարեան Մերուժան | Խրզրուժ | 12 | մայր | Ալէքսան. | այո |
| 51 | Երանոսեան Սեդրակ | Ալճավազ | 11 | մայր | Էջմիածին | ոչ |
| 52 | Եւգինէ | — | 3 | — | — | — |
| 53 | Զաքարեան Սողոմոն | Դիզուտ | 12 | մայր | Էջմիածին | ոչ |
| 54 | Էգնոյեան Փարհազ | Լուտ | 8 | չունի | — | ոչ |
| 55 | Թումասեան Նոյեմզար | Դաշվերան | 10 | ունի | Ջիբուխլի | ոչ |
| 56 | Թումասեան Հայկ | Դաշվերան | 10 | չունի | — | » |
| 57 | Խաչօեան Յակոբ | Մարքսա | 12 | չունի | — | ոչ |
| 58 | Խլոյեան Մկօ | Վան | 10 | մայր | Դիլիջան | » |
| 59 | Խլոյեան Շուշան | Արուշ | 10 | մայր | Դիլիջան | |
| 60 | Խաչատուրեան Զարուհի | Բերդ գիւղ | 12 | չունի | — | այո |
| 61 | Խաչատուրեան Նեկտար | Լաթոր | 9 | ունի | Ախտէն | այո |
| 62 | Խաչատուրեան Յարութիւն | Վան | 8 | մայր | Դիլիջան | » |
| 63 | Խոստեղեան Սիրանուշ | Կարլկէ | 7 | չունի | — | ոչ |
| 64 | Խաչատրեան Անժէլ | Վանեցի | 7 | ունի | անյայտ | այո |
| 65 | Խաչատուրեան Մարիամ | Էմանցի | 10 | չունի | — | » |
| 66 | Խաչատուրեան Թաթուխ | Ալճավազ | 8 | ունի | Էջմիածին | ոչ |
| 67 | Խաչատուրան Անթառամ | Սեանցի | 10 | չունի | — | » |
| 68 | Խաչիկեան Հայաստան | Վանեցի | 13 | չունի | — | » |
| 69 | Խաչատուրեան Կինօ | Կարճնացի | 10 | չունի | — | » |
| 70 | Խաչատուրեան Հայկանուշ | Արճավազգ | 5 | ունի | Էջմիածին | » |
| 71 | Խաչատուրեան Շուշանիկ | Վան | 8 | մայր | Դիլիջան | » |
| 72 | Խաչատուրեան Վարագդատ | Վան | 8 | չունի | — | » |
| 73 | Կիւրոյեան Սամէն | Խումար | 12 | չունի | չունի | » |
| 74 | Կարապետեան Շնորհիկ | Իշխան գիւղ | 7 | մայր | Էջմիածին | » |
| 75 | Կարապետեան Էլուսիկ | Բաթան | 13 | մայր | Էջմիածին | » |
| 76 | Կարապետեան Հռիփսիմէ | Արդնցի | 8 | մայր | Էջմիածին | » |
| 77 | Կարապետեան Մաքրուհի | » | 1 | » | » | » |
| 78 | Կարապետեան Ազնիւ | Վան | 6 | չունի | — | » |
| 79 | Կիւղոյեան Պայծառ | Կօրծաթ | 13 | մայր | Էջմիածին | » |
| 80 | Կարապետեան Ռուբէն | Շուշան | 9 | հայր | Ամերիկա | » |
| 81 | Կարապետեան Արամ | Արզակ | 8 | մայր | Դիլիջան | » |
| 82 | Կարապետեան Հրանդ | Արճակ | 10 | մայր | Դիլիջան | » |
| 83 | Կարապետեան Եսայի | Վան | 5 | հայր | Դիլիջան | » |
| 84 | Հասրաթեան Խանէ | Լաթար | 10 | ունի | Ջիբուխլի | ոչ |
| 85 | Հասրաթեան Ասէ | » | 7 | » | » | » |
| 86 | Հասրաթեան Խանէ | Լաթար | 11 | ունի | Ջիբուխլի | այո |
| 87 | Համբարձումեան Սարգիս | Դեղուտ | 9 | մայր | Էջմիածին | ոչ |
| 88 | Ղազարեան Սաթենիկ | Բզանի | 14 | մայր | անյայտ | ոչ |
| 89 | Ղազարեան Նունիկ | Սեան | 10 | չունի | -- | » |
| 90 | Ղազարեան Արմենակ | Խօշգետ | 9 | ունի | Ջիբուխլի | » |
| 91 | Ղազարեան Հովաննէս | Զիչան | 8 | չունի | — | » |
| 92 | Ղազարեան Խաչատուր | Սեան | 11 | չունի | — | » |
| 93 | Ղազարեան Սարգիս | Մոխրաբերդ | 9 | ունի | Էջմիածին | » |
| 94 | Ճէվայիրեան Ալմօ | Զեչան | 8 | ունի | Էջմիածին | ոչ |
| 95 | Մարտիրոսեան Կատիֆ | Տեղուտ | 13 | չունի | — | » |
| 96 | Մանուկեան Վարդկէս | Տաղվերան | 7 | ունի | Ջիբուխլի | » |
| 97 | Մարգարեան Պետրոս | Կզզի | 9 | չունի | — | » |
| 98 | Մարտիրոսեան Ազատ | Տօն | 10 | չունի | — | » |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 99 | Մկրտչեան Արուսեակ | Գեղան | 11 | չունի | — | ոչ |
| 100 | Մանուկեան Կինօ | Վան | 11 | չունի | — | » |
| 101 | Մարկոսեան Գեղանուշ | Վան | 4 | հայր | Վան | » |
| 102 | Մովսէսեան Սատաֆ | Լիճ | 13 | » | — | » |
| 103 | Մարտիրոսեան Լալա | Դուցուս | 6 | հայր | Էջմիածին | ոչ |
| 104 | Մարտիրոսեան Նազէ | Թաց | 11 | հայր | Էջմիածին | » |
| 105 | Մաթէոսեան Մարօ | Գանցուազ | 5 | ունի | Դիլիջան | » |
| 106 | Մովսէսեան Հայկանուշ | Թազա | 10 | ունի | Իգդիր | » |
| 107 | Մարգարեան Դիլպեր | Սեան | 4 | մայր | Էջմիածին | » |
| 108 | Մարգարեան Փանփուս | Կզզի | 12 | չունի | — | » |
| 109 | Մանուկեան Շուշանիկ | Վան | 12 | չունի | — | այո |
| 110 | Մանուկեան Զօզէ | Տաղվերան | 10 | ունի | Ջիբուխլի | ոչ |
| 111 | Մկրտչեան Մարիամ | Խակ | 9 | չունի | — | » |
| 112 | Մխոյեան Նունուֆար | Լաթար | 10 | ունի | Էջմիածին | » |
| 113 | Մանուկեան Սիրանոյշ | Վան | 12 | մայր | Էջմիածին | այո |
| 114 | Միսաքեան Ռուստիկ | Խլաթ | 10 | չունի | — | ոչ |
| 115 | Մանուկեան Ալմազ | Վան | 8 | մայր | Դիլիջան | այո |
| 116 | Մելիքեան Գիւլվարդ | Ալճուազ | 10 | չունի | — | » |
| 117 | Մարտիրոսեան Մանուշ | Խօշ-գելտի | 15 | մայր | Ջիբուխլի | ոչ |
| 118 | Մարտիրոսեան Մարօ | Տունօցի | 6 | չունի | — | » |
| 119 | Մարկոսեան Գեղանուշ | Վան | 4 | հայր | Վան | » |
| 120 | Միհրանեան Մաքրուհի | Կրինկերտ | 8 | չունի | — | » |
| 121 | Մարգարեան Արմենուհի | Սեանց | 10 | մայր | Էջմիածին | » |
| 122 | Մկրտչեան Սառա | Զորէվան | 11 | ունի | անյայտ | » |
| 123 | Միրզոյեան Ջանազան | Կէօրծաթ | 11 | մայր | Երևան | » |
| 124 | Մուրատեան Սատաֆ | Քաւաշ | 14 | չունի | — | » |
| 125 | Միսաքեան Գայծառ | Ալճաւ | 10 | մայր | Էջմիածին | » |
| 126 | Միսաքեան Ալմազ | Շուշան | 10 | հայր | անյայտ | » |
| 127 | Միհրանեան Վարդանուշ | Բծնկերտ | 13 | չունի | — | » |
| 128 | Մելքոնեան Զօլա | Մանազկերտ | 15 | — | — | » |
| 129 | Միսաքեան Խանէ | Գլաթացի | 12 | հայր | Ամերիկա | ոչ |
| 130 | Մովսէսեան Գէորգ | Վան | 6 | չունի | — | ոչ |
| 131 | Մանուկեան Յակոբ | Խժշկեցի | 12 | մայր | Էջմիածին | » |
| 132 | Մանուկեան Յակոբ | Շատախ | 12 | չունի | — | այո |
| 133 | Մարգարեան Վարազդատ | Սեանցի | 7 | մայր | Էջմիածին | ոչ |
| 134 | Մարտոյեան Յակոբ | Աթուսցի | 8 | չունի | — | » |
| 135 | Մարտոյեան Գէորգ | » | 11 | չունի | — | » |
| 136 | Մկրտչեան Ղազար | Ալճուազ | 10 | հայր | Դիլիջան | » |
| 137 | Մովսիսեան Ամենակ | Լիճ | 11 | չունի | — | » |
| 138 | Մանուկեան Եղիազար | Ոստան | 6 | մայր | Էջմիածին | » |
| 139 | Մկրտչեան Միհրան | Ալճուազ | 4 | չունի | — | » |
| 140 | Մարկոսեան Հոհաննէս | » | 5 | չունի | — | » |
| 141 | Միսաքեան Եղիշէ | Վան | 4 | մայր | Էջմիածին | » |
| 142 | Մովսեսեան Արծրունի | Շաթախ | 12 | չունի | — | այո |
| 143 | Միսաքեան Հայրիկ | Շաթախ | 11 | չունի | — | » |
| 144 | Մանուկեան Գրիգոր | Խջսկեցի | 13 | մայր | Էջմիածին | » |
| 145 | Յարութիւնեան Ղումար | Կէօրծաթ | 10 | չունի | — | ոչ |
| 146 | Յակոբեան Մարտիրոս | Գոմ | 12 | չունի | — | » |
| 147 | Յարութիւնեան Անթառամ | Կեօրծաթցի | 15 | հայր | — | » |
| 148 | Յոհաննիսեան Վարսենիկ | Խարկիմ | 12 | չունի | — | » |
| 149 | Յակոբեան Վարդանուշ | Վան | 10 | ունի | Երևան | այո |
| 150 | Յարութիւնեան Զիչօ | Ալճվազզ | 12 | չունի | — | » |
| 151 | Յարութիւնեան Ղուզրէթ | » | 9 | » | — | ոչ |
| 152 | Յարութիւնեան Էթօ | Ալճվազզ | 7 | » | — | » |
| 152 | Յարութիւնեան Ալմաստ | Կեօրծաթ | 12 | չունի | — | ոչ |
| 153 | Յարութիւնեան Արուսեակ | Էրէրնայ | 10 | մայր | Էջմիածին | » |
| 154 | Յակոբեան Նարգիս | Ալճավազ | 12 | չունի | — | » |
| 155 | Յոհաննէսեան Տելբէր | Բուլանկցի | 10 | չունի | — | » |
| 156 | Յակոբեան Զարհուի | Կզզեցի | 10 | չունի | — | » |
| 157 | Յոհաննէսեան Հայկուշի | Վանեցի | 8 | մայր | Դիլիջան | այո |
| 158 | Յակոբեան Եղիսաբէթ | Շուշանցի | 10 | մայր | Էջմիածին | ոչ |
| 159 | Յակոբեան Մարիամ | Փշանեցի | 12 | չունի | — | » |
| 160 | Յարութիւնեան Սրբուհի | Ցերին | 6 | հայր | Ամերիկա | » |
| 161 | Յովաննեսեան Արփենի | Վան | 5 | մայր | Դիլիջան | » |
| 162 | Յովհաննեսեան Մայրիկ | Վան | 7 | չունի | — | ոչ |
| 163 | Յարութիւնեան Եղիսաբէթ | Ապաղ | 11 | չունի | — | » |
| 164 | Յարութիւնեան Գարեգին | Կիսավազ | 9 | ունի | Էջմիածին | » |
| 185 | Յոհաննեսեան Հակոբ | Պաղուս | 11 | չունի | — | » |

